# ԳԱՌՆԻ

## III

Բ. Ն. ԱՌԱՔԵԼՅԱՆ
Գ. Հ. ԿԱՐԱԽԱՆՅԱՆ

## 1949–1956 ՊԵՂՈՒՄՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ



ԵՐԵՎԱՆ–1962

АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ АРХЕОЛОГИИ И ЭТНОГРАФИИ

АРХЕОЛОГИЧЕСКИЕ РАСКОПКИ В АРМЕНИИ

№ 10

# ГАРНИ

## III

Б. Н. АРАКЕЛЯН, Г. О. КАРАХАНЯН

РЕЗУЛЬТАТЫ РАСКОПОК
1949—1956 гг.

(Средние века)

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1962

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ

ՀՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱԶԳԱԳՐՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ՀՆԱԳԻՏԱԿԱՆ ՊԵՂՈՒՄՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

№ 10

# Գ Ա Ռ Ն Ի

## III

Բ. Ն. ԱՌԱՔԵԼՅԱՆ, Գ. Հ. ԿԱՐԱԽԱՆՅԱՆ

1949—1956 ԹԹ.

ՊԵՂՈՒՄՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

(Միջին դարեր)

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ 1962

Տպագրվում է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի խմբագրական-հրատարակչական խորհրդի որոշմամբ

*Դվինի պեղումների արդյունքներին նվիրված սույն երրորդ պրակում քննարկված են ամրոցի ներսում, մասամբ և Դվինի գյուղի տերիտորիայում պեղումներով հայտնաբերված միջնադարյան նյութերը։ Ուշագրավ ու արժեքավոր այդ նյութերը հարուստ փաստական տվյալներ են ընձեռում միջնադարյան գյուղաքաղաքի և փոքր քաղաքի տընտեսության ու զբաղմունքների՝ երկրագործության, այգեգործության, արհեստագործության, առևտրի և բնակչության կյանքի ու կենցաղի ուսումնասիրության համար։*



Առաջաբանը, եզրակացությունները, 1—4 բաժինները գրել է Բ. Ն. Առաքելյանը, 5-րդ բաժինը՝ Գ. Հ. Կարախանյանը։

# ԱՌԱՋԱԲԱՆ

*Գառնին Հայաստանի հնագույն բնակավայրերից և ամրոցներից մեկն է։ Նրա հիմնադրումը ավանդաբար վերագրվում է անհիշելի ժամանակներին։ Գառնի ամրոցում կատարված պեղումները ևս ցույց են տալիս, որ այստեղ բնակավայր եղել է, դեռևս, ավելի քան չորս հազար տարի առաջ, երբ մարդիկ, քարե գործիքների հետ միասին, նոր սկսում էին օգտագործել նաև մետաղը, այն էլ միայն պղինձը՝ դեռևս չիմանալով, թե պղնձից կարելի է բրոնզ ստանալ։*

*Գառնին իբրև բնակավայր իր գոյությունը պահպանել է նաև բրոնզի դարում, երբ այստեղ կառուցված է ամրոց, որի մնացորդները հայտնաբերվել են պեղումների ժամանակ։*

*Հետագայում, հայկական թագավորության առաջացման ժամանակաշրջանում Գառնին հզոր ամրոց է դառնում։ Արտաշեսյան և Արշակունյաց թագավորությունների ժամանակ Գառնին թագավորական ամրոց էր և զորակայան։*

*Ունենալով հարմար դիրք և հզոր պարիսպներ, Գառնին հանդիսանում էր Արարատյան դաշտավայրի և մշտապես այստեղ գանվող հայոց մայրաքաղաքների պաշտպանության հյուսիս-արևելյան հենակետը։*

*Գառնին հետագայում էլ՝ երկար դարեր պահպանեց իր գոյությունը իբրև բերդ, միջին դարերում գյուղաքաղաք դարձավ, ապա քայքայվելով, վերածվեց գյուղի և ավերվեց թուրքական զորքերի ձեռքով 1630-ական թվականներին։*

*Միանգամայն բնական է. որ այդչափ երկարատև կյանք ունեցող մի հուշարձանի պեղումների հետևանքով պետք է երևան գային տարբեր դարաշրջանների կուլտուրական շերտեր, իրարից շատ տարբեր և բազմաքանակ հնագիտական նյութեր և ճարտարապետական կառուցվածքների մնացորդներ։*

*Այդ նյութերի մի մասը ուսումնասիրված և հրապարակվել է ներկա շարքի առաջին և երկրորդ պրակներում։*

*Առաջին պրակում[1] ամփոփված են Գառնիի հնագիտական արշավախմբի 1949—1950 թթ. աշխատանքների ընթացքում հայտնաբերված հնագիտական նյութերը, դրանց թվում՝ մասամբ և միջնադարյան հուշարձանները։ Երկրորդ պրակում[2] ամփոփված է 1951—1955 թթ. ընթացքում հայտնաբերված նյութերի և հուշարձանների միայն մի մասը, այն է՝ հին կամ անտիկ ժամանակաշրջանին վերաբերող նյութերը, որոնք ժամանակագրորեն պատկանում են հիմնականում առաջին—երրորդ դարերին։*

---

[1] Б. Н. Аракелян, Гарнн I, Результаты работ археологической экспедиции института истории Академии наук Армянской ССР 1949—1950 гг., Ереван, 1951.

[2] Б. Н. Аракелян, Гарни II. Результаты работ Гарнийской археологической экспедиции 1951—1955 гг. (Античный период), Ереван, 1957.

Ներկա երրորդ պրակում հրապարակված են 1951—1956 թթ. ընթացքում հայտնաբերված միջնադարյան հուշարձանների և հնագիտական նյութերի ուսումնասիրման արդյունքները։ Պրակում յուրաքանչյուր տարվա պեղումների ամփոփ նկարագիրը չի արվում, որովհետև այդ արված է երկրորդ պրակում, բացի այդ հնարավոր էլ չէ ըստ տարիների ներկայացնել միայն միջնադարյան հուշարձանների հայտնաբերման պատկերը։

Գառնիում կատարվող պեղումների շնորհիվ պարզված է, որ ամրոցի կողքին դեռևս հին ժամանակներից եղել է բնակատեղի կամ քաղաքատիպ ավան։ Գրավոր աղբյուրների վկայությունների համաձայն Գառնի ավանը, աճելով IX—X դարերում դառնում է աչքի ընկնող գյուղաքաղաք, իբրև այդպիսին հիշատակվելով մինչև XV դարը։ Հետագայում նրան վիճակվեց պատմական նույն բախտը, որը բաժին ընկավ Հայաստանի մյուս գյուղաքաղաքներին ու քաղաքներին, որոնք մոնղոլների դաժան տիրապետության, նրանց վարած տնտեսական և հարկային քաղաքականության, երկրի անտեսական ընդհանուր անկման, արհեստագործության և առևտրի քայքայման հետևանքով, ավերվեցին, քայքայվեցին և վերածվեցին ավանների կամ գյուղերի։

Գրավոր աղբյուրներից բացի միջնադարյան Գառնիի վերաբերյալ պատմում են տեղում պահպանված ճարտարապետական և այլ հուշարձանները, ինչպես և ամրոցի պեգումների շնորհիվ հայտնաբերված հնագիտական նյութերը։ Այս ամենը հնարավորություն է ընձեռում հետևելու Գառնի գյուղաքաղաքի աճին ու զարգացմանը, լուսաբանելու նրա բնակչության զբաղմունքը, կյանքն ու կենցաղը, իսկ դա խոշոր կարևորություն է ներկայացնում Հայաստանի միջնադարյան գյուղաքաղաքների և մանր քաղաքների անտեսությունը, կուլտուրական կյանքը և բնակչության կենցաղը ուսումնասիրելու տեսակետից։

Պեղումները Գառնիում սկսվել են 1949 թ. և ամեն տարի կատարվում են մեկ ու կես—երկու ամիս տևողությամբ, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտի (1959 թ. Հնագիտության և ազգագրության ինստիտուտի) Գառնիի հնագիտական արշավախմբի կողմից։ Հնագիտական արշավախմբի աշխատանքներին 1949—1956 թթ. ընթացքում մասնակցել են՝ պատմական գիտությունների դոկտոր Բ. Ն. Առաքելյանը՝ արշավախմբի ղեկավար (1949—1956), ճարտարապետության թեկնածու Ա. Ա. Սահինյանը՝ արշավախմբի պետի տեղակալ (1949—1956), բանասիրական գիտությունների թեկնածուներ՝ Մ. Ս. Հասրաթյանը (1950), Մ. Ա. Իսրայելյանը (1949—1951), պատմական գիտությունների թեկնածուներ՝ Հ. Ա. Մարտիրոսյանը (1950—1954), Ա. Հ. Սարդարյանը (1949—1951), Ե. Ա. Մուշեղյանը (1949—1953), Հ. Հ. Մնացականյանը (1949), Հ. Ս. Եղիազարյանը (1950), Գ. Հ. Կարախանյանը (1951—1956), Պետական էրմիտաժի աշխատակից Ռ. Վ. Կինժալովը (1951)։ Իբրև ճարտարապետ աշխատելու են հրավիրվել Բ. Ա. Արզումանյանը, որը միաժամանակ եղել է արշավախմբի նկարիչը (1950—1952), Մ. Հարությունյանը (1949)։ Արշավախմբի աշխատանքներին մշտական մասնակցություն են ցուցաբերել Պատմության ինստիտուտի ասպիրանտներ, այժմ ավագ գիտական աշխատակիցներ Գ. Ա. Տիրացյանը, Հ. Մ. Բարթիկյանը, Ջ. Մ. Ղասարյանը։ 1954 թ. արշավախմբի աշխատանքներին մասնակցելու հրավիրվեցին մարդաբան Հ. Ա. Ազիզյանը և հնագետ Թ. Ս. Խաչատրյանը։ Իբրև նկարիչ արշավախմբի աշխատանքներին մասնակցել են նաև Մ. Ա. Կանայանը (1952), լաբորանտ Է. Վ. Խանզադյանը (1951—1952), վերա-

կանգնող հնագետներ Վ. Ղազազյանը (1949), Հ. Հայրապետյանը (1951), որոնք լինելով Հայաստանի Պետական պատմական թանգարանի աշխատակիցներ, վերականգնել են արշավախմբի հանձնած հնագիտական առարկաները նաև այն տարիներին, երբ չեն մասնակցել արշավախմբի դաշտային աշխատանքներին։

Արշավախմբի լուսանկարչի պարտականությունները կատարել են Ա. Մ. Քոչարը (1949—1952), Դ. Ժամհարյանը (1953), Ա. Շահինյանը (1954—1956)։ Իբրև պրակտիկանտներ, արշավախմբի աշխատանքներին նույն տարիներին մասնակցել են Երևանի Պետական համալսարանի պատմության ֆակուլտետի 40-ից ավելի ուսանողներ։

1951 թ. Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Նախագահության հրավերով Գառնիի հնագիտական արշավախմբի աշխատանքներին իբրև կոնսուլտանտ մասնակցեցին ակադեմիկոս Հովսեփ Օրբելին և ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Կ. Վ. Տրևերը։ Հ. Ա. Օրբելին և Կ. Վ. Տրևերը ուղղություն էին տալիս, ղեկավարում արշավախմբի աշխատանքները և իրենց խիստ արժեքավոր ցուցումներով ու խորհուրդներով մշտապես օգնում էին աշխատակիցներին։

Հ. Ա. Օրբելին և Կ. Վ. Տրևերը երեկոյան ժամերին կազմակերպում էին զրույց-պարապմունքներ, անելով հաղորդումներ ու զեկուցումներ տարբեր թեմաներով։ Բացի այդ, Հ. Ա. Օրբելին Գառնիում եղած ժամանակամիջոցում արշավախմբի աշխատակիցների և պրակտիկանտների հետ մշտապես պարապում էր գրաբար և սովորեցնում հայերեն վիմագիր արձանագրություններ հավաքելու ու ուսումնասիրելու գործը, որի խոշորագույն վարպետն էր ինքը։

Կ. Վ. Տրևերը իր ժամանակի մեծ մասը տրամադրեց Գառնիի հեթանոսական տաճարի մանրակրկիտ ուսումնասիրությանը[1]։

---

[1] Կ. Վ. Տրևերի 1953 թ. լույս ընծայած Очерки по истории культуры древней Армении (II в. до н. э.—IV в. н. э.) աշխատության առաջին բաժինը (էջ 23—95) նվիրված է Գառնիի հեթանոսական տաճարին։

## 1. ԳԱՌՆԻՆ ԸՍՏ ԳՐԱՎՈՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ

*Գառնիի մասին մատենագրական տեղեկություններ պահպանել են հայ և օտարազգի հեղինակները։ Այդ տեղեկությունները վերաբերում են Գառնիի հիմնադրմանը, այստեղ կատարված շինարարությանը, ամրոցի հետ կապված քաղաքական անցքերին, շոշափում են Գառնի գյուղաքաղաքի տնտեսական կյանքի առանձին կողմերը։*

*Օգտվելով ժողովրդական ավանդություններից, պատմահայր Մովսես Խորենացին Գառնիի հիմնադրումը վերագրում է Հայկ նահապետի հետնորդների առասպելական ժամանակներին։ Նրա ասելով, Հայկի թոռ Ամասիայի որդի Գեղամը բնակություն հաստատելով Սևանա լճի ափին, «դառնայ անգրէն ի գաշտ անդր, և առ ոտամբ նորին լերինն [Գեղ] ի ձորակի միում ամրոց շինէ ձեռակերտ մի, և կոչէ զանուն նորա Գեղամի, որ յետոյ ի Գառնկայ թոռանէ նորա անուանեցաւ Գառնի»[1]։ («Դառնում է այնտեղից մի դաշտի մեջ և նույն [Գեղ] լեռան ստորոտում, ամուր ձորակի մեջ շինում է մի ձեռակերտ և իր անունով կոչում է Գեղամի, որը հետո նրա Գառնիկ թոռան անունով անվանվեց Գառնի»)։*

*1346 թ. արտագրված մի ձեռագիր հիշատակարանում կարդում ենք. «ԲՌ ԷՃ և ԺԷ ամով յառաջ քան զհայ թուականն շինեցաւ գեղաքաղաքն Գառնի ի Գեղամայ և ի Գառնկոյ»[2]։ («2717 տարի առաջ քան հայ թվականը (այսինքն՝ 2166 թ. մ. թ. ա.) շինվեց Գառնի գյուղաքաղաքը Գեղամի և Գառնիկի կողմից»)։*

*Սրանք, իհարկե, ավանդական տվյալներ են, որոնք, սակայն, ընդգծում են Գառնիի շատ հին բնակավայր լինելու հանգամանքը։*

*Պեղումները ես ցույց են տալիս, որ Գառնիում բնակությունը սկսվել է շատ վաղ ժամանակներում, իսկ սրբատաշ քարերից կանգնեցված ամրոցը կառուցվել է բրոնզեդարյան ամրոցի տեղում, հավանաբար III դարում մեր թվագրությունից առաջ։*

*Բարձր արվեստով կառուցված այդ ամրոցը կանգուն էր, երբ առաջին դարի կեսերին դարձավ որոշ պատմական անցքերի կենտրոն։ Այդ ժամանակ հայկական գահի վրա հռոմեացիների օգնությամբ նստել էր վրաց Փարասման թագավորի եղբայր Միհրդատը։ Փարասմանի որդի Հռադամիզդը դավադրություն կազմակերպելով իր հորեղբայր Միհրդատի դեմ և ձգտելով խլել նրանից գահը, զորքով գալիս է Միհրդատի վրա։ Վերջինս չկարողանալով*

---

[1] *Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 41։*

[2] *ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, կազմեց Լ. Ս. Խաչիկյան, 1950, Լջ 351։*

դիմադրել իր ախոյանին, ամրանում է Գառնի ամրոցում։ Հռադամիզդը պաշարում է ամրոցը, բայց չի կարողանում գրավել այն։ Նկարագրելով այս անցքերը, հռոմեացի պատմիչ Կոռնելիոս Տակիտոսը ասում է, թե այդ բերդը ամուր էր իր անդադրությամբ[1]։

Միհրդատը բարձրանալով հայկական գահի վրա, ջանում էր վարել ինքնուրույն քաղաքականություն, որը ձեռնտու չէր հռոմեացիներին, ուստի հռոմեական զորավարներն օժանդակում էին Հռադամիզդին։ Վերջինս զենքի ուժով չկարողանալով գրավել Գառնին, հաշտության պատրվակով, իր մոտ է հրավիրում Միհրդատին։ Հռոմեական կայազորի կաշառված հրամանատար Կելիուս Պոլլիոնի ճնշման տակ Միհրդատը դուրս գալով ամրոցից, ուխտադրժորեն սպանվում է, իսկ Հռադամիզդը տիրում է հայկական գահին։ Բնորոշ է թե ի՞նչ դիրք են բռնում այս անցքերի նկատմամբ հռոմեական զորավորները։ Տակիտոսը պատմում է, թե Ասորիքի հռոմեական կուսակալ Կվադրատոսը տեղեկանալով Միհրդատի սպանության մասին, հրավիրում է խորհուրդ, հաղորդում է եղելությունը և կարծիք հարցնում, թե արդյոք անհրաժեշտ չէ՞ պատժել մեղավորներին։ Սակայն պետության հասարակական պատվի մասին քչերն էին հոգում։ Շատերն ասում էին, որ օտարների ամեն մի ոճրագործություն պետք է ընդունվի ուրախությամբ, որ անհրաժեշտ է նույնիսկ նրանց մեջ ատելության սերմեր ցանել, ինչպես այդ հաճախ արել են հռոմեական կայսրները, բարբարոսների մեջ երկպառակություններ առաջ բերելու համար։ Խորհուրդը հայանեց այն կարծիքը, որ ավելի լավ է, որ Հռադամիզդն իշխանության է հասել հանցանքով, այլ ոչ փառքով։

Այս կարծիքին հավանություն տրվեց[2]։ Նվաճված կամ իրենցից կախյալ երկրների միջև ատելություն և թշնամանք սերմանելը հռոմեացիների սիրած քաղաքականությունն էր, որը ցայտուն կերպով դրսևորվել է հայկական գահի շուրջը տեղի ունեցող խժդժությունների կապակցությամբ։

Նույն առաջին դարի 50-ական թվականներին հռոմեացիները գրավել էին Հայաստանը, բայց հանդիպելով հայերի և սրանց դաշնակից պարթևների դիմադրությանը, ստիպված էին նահանջել և հեռանալ երկրի սահմաններից։ 59 թ. Հայաստանի մայրաքաղաք Արտաշատից նահանջելուց առաջ հռոմեացիները հիմնահատակ ավերեցին և հրկիզեցին այն և, ինչպես երևում է, նրանք չխնայեցին նաև մայրաքաղաքի պաշտպանության հյուսիս-արևելյան հենակետ հանդիսացող Գառնի ամրոցը։

63 թ. հռոմեական լեգիոնները ծանր և ամոթալի պարտություն կրեցին Հռանդեայի ճակատամարտում (այժմյան Խարբերդ քաղաքի մոտերքը) և դուրս շպրտվեցին Հայաստանից։

Հայկական գահի վրա բարձրացած Տրդատ Ա թագավորի օրոք վերաշինվեցին ինչպես Արտաշատ մայրաքաղաքը, նույնպես և Գառնի արքայական ամրոցը։ Ահա, այս ժամանակ է վերականգնվել Գառնի ամրոցի հզոր պարիսպը։ Ամենայն հավանականությամբ Տրդատն է կառուցել տվել նաև Գառնիի հեթա-

---

[1] Tac. Annales, XII, 45.

[2] Tac. Annales, XII, 48 (օգտագործված է Հ. Մանանդյանի թարգմանությունը (Քննական տեսություն հայ ժող. պատմության, հատ. Ա, էջ 322), որը համեմատված է Լատիշևի թարգմանության հետ։ ВДИ, № 3, 1945։

նոսական տաճարը, որը չորս կողմից սյուներով շրջապատված և շքեղորեն քանդակազարդված շենք է եղել՝ կանգնած բարձրադիր հարթակի վրա։

Նկարագրելով այս շինարարությունը Մովսես Խորենացին գրում է.

«Յայսու ժամանակաւ կատարէ Տրդատ զշինուած ամրոցին Գառնւոյ, զոր որձաքար և կոփածոյ վիմօք, երկաթագամ և կապարով մածուցեալ. յորում շինեալ և տուն հովանոց, մահարձանօք, սքանչելի գրօշուածովք, բարձր քանդակաւ ի համար քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ, և գրեալ ի նմա զյիշատակ իւր հելլենացի գրով»[1]։

(«Այս ժամանակներում Տրդատն ավարտեց Գառնի ամրոցի շինությունը՝ որձաքար և տաշած վեմերով, երկաթագամ և կապարով ամրացված, որի մեջ կառուցեց նաև տուն հովանոց, սյունազարդ, սքանչելի փորագրություններով և բարձր քանդակով, իր քույր Խոսրովիդուխտի համար և դրեց նրա վրա իր հիշատակը հունական գրերով»)։

Այս վկայությունից երևում է, որ Մովսես Խորենացին ամրոցի և նրա մեջ գտնվող սյուներով ու բարձրադիր քանդակներով զարդարված հովանոցի շինությունը վերագրում է Տրդատ Գ-ին։ Սակայն դրան հակասում են, ինչպես ամրոցի պարսպի և հեթանոսական տաճարի շինարարական արվեստի առանձնահատկությունները, նույնպես և այն հանգամանքը, թե արքայական այդ կարեւոր ամրոցը կարող էր մինչև Տրդատ Գ-ի ժամանակները, այսինքն, ավելի քան երկու դար ավերակ ու ամայի մնալ։ Բերդի պարսպի և հեթանոսական տաճարի շինարարական արվեստի քննությունը ցույց է տալիս, որ ամրոցը վերաշինվել է ոչ թե Տրդատ Գ-ի ժամանակ, III դարի վերջին կամ IV դարի սկզբներին, այլ հայ Արշակունիների թագավորության հիմնադիր Տրդատ Ա-ի ժամանակ։ Գառնիում 1945 թ. գտնված հունարեն արձանագրության մեջ ասված է, թե ամրոցը կառուցվեց Տրդատի թագավորության 11-րդ տարում։ Եթե ընդունենք, որ արձանագրությունը թողել է Տրդատ Ա-ը, ապա ամրոցի վերաշինության ժամանակը կլինի մեր թվականության 77 թ., այսինքն՝ ավերվելուց 18 տարի հետո։

Հետագայում ևս Գառնիում կառուցվել են պալատական շենքեր, արքայական բաղնիք՝ խճանկար (մոզայիկ) հատակով, բնակելի շենքեր, զորանոցներ։ Այս շենքերի մի մասը կառուցվել է Տրդատ Գ-ի ժամանակ, որին սխալմամբ վերագրվել է նաև ամրոցի և հեթանոսական տաճարի շինությունը։

Գառնին իբրև արքունի ամրոց հիշատակում է նաև Փավստոս Բուզանդը, որը պատմելով Խոսրով Բ Կոտակի (332—338) ժամանակ Դվինի հիմնադրումից հետո անտառի տնկման մասին ասում է. «Եւ ետ հրաման թագաւորն զօրավարին իւրոյ՝ հանել խաշար յաշխարհէն բաւում, և բերել զվայրենի կաղին մայրեաց, և տնկել զայն յայրարատեան գաւառին. և առեալ յամուր բերդէն արքունի, որում կոչեն Գառնի, մինչև ի դաշտն Մեծամօրի ի բլուրն՝ որ անուանեալ կոչի Դուին, որ կայ ի հիւսիսոյ կողմանէ քաղաքին մեծի Արտաշատու, զգետն խոնարհ մինչև յապարանսն Տիկնունի՝ տնկեցին զկաղիննն։ Եւ կոչեաց զանուն նորա Տաճար մայրի»[2]։

---

1 Մովսես Խորենացի, Պատմութիւն, Տփղիս, 1913, էջ 241—242։

2 Փաւստոս Բուզանդ, Վենետիկ, 1889, էջ 18։

(«Եվ հրաման տվեց թագավորը յուր զորավարին՝ մեծ թվով խաշար հանել[1] աշխարհից և անտառների վայրի կաղին բերել ու տնկել այն Այրարատյան գավառում։ Եվ սկսած արքունի ամուր բերդից, որը Գառնի են անվանում, մինչև Մեծամորի դաշտը և այն բլուրը, որը կոչվում է Դվին և որը գտնվում է Արտաշատ մեծ քաղաքի հյուսիսային կողմում, գետով դեպի ցած մինչև Տիկնունի ապարանքը տնկեցին կաղինը։ Եվ նրա անունը կոչվեց Տաճար մայրի»)։

Նույն IV դարում Գառնիում նստում էր Գեորգ անունով եպիսկոպոսը[2]։ Դա նշանակում է, թե Գառնին իբրև արքայական ամրոց և աչքի ընկնող ավան փոքր ի շատե կարևոր կենտրոն էր համարվում։

Գառնի գյուղում պահպանվում են շատ հնատիպ, արտաքին սյունասրահով բազիլիկ մի շենքի ավերակները (տեղացիները անվանում են խոնարհ եկեղեցի, այսինքն կործանված, ավերված եկեղեցի), որը կարող է IV—V դարի եկեղեցու մնացորդները լինել։

Արշակունյաց թագավորության անկումից հետո, թագավորական ամրոց-զորակայաններում, դրանց թվում նաև Գառնիում հաստատվել էին Պարսից զորքերը։ Դա պարզ երևում է Եղիշեի մի վկայությունից. պատմելով 450—451 թթ. ժողովրդական ապստամբության եղելությունների մասին, Եղիշեն ասում է, թե ապստամբները «յարձակեցան ի վերայ բերդիցն և աւանաց, զոր ունէին Պարսիկքն ի տեղիս տեղիս, յամրոցս աշխարհին. ապականէին, քանդէին զբնակութիւնս նոցա։ Առաջին զմեծն Արտաշատ յանդերձ աւանօք իւրովք և առնուին զանմատոյց ամուրսն՝ զԳառնի քաղաքն, զԱնին, զԱրտագերս և զաւանս իւրեանց...»[3] և այլ ամրոցներ։ («Հարձակվեցին այն բերդերի և ավանների վրա, որոնք տեղ-տեղ գրավել էին պարսիկները, տապալեցին, քանդեցին նրանց բնակությունը։ Առաջին հերթին՝ մեծ Արտաշատը հանդերձ իր ավաններով. և գրավեցին անմատչելի ամրոցները՝ Գառնի քաղաքը, Անին, Արտագերսը և իրենց ավանները»)։

Այստեղ Գառնիին տրված է առաջնություն Արտաշատ մայրաքաղաքից հետո, ըստ որում ասվում է, թե ապստամբները գրավեցին Գառնի քաղաքը։

Վասակ Սյունին, որը երկրի մարզպանն էր և սկզբում ապստամբության ղեկավարներից մեկը, դավաճանելով անցնում է պարսիկների կողմը և ավերում է «զբազում տեղիս Հայոց աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի, որ կայանք զօրացն էին, զԳառնի և զԵրամանս և զԴրասխանակերտն՝ զմեծ դաստակերտն, զՎարդանաշատն և զամուրն Օշական, զՓառախոտն, զՍարդեանսն, զՁողակերտն աւան և զբերդն Արմաւրի, զԿուաշն աւան, զԱրուճն, զԱշնակն...»[4]։ (ավերում է «Հայոց աշխարհի բազմաթիվ վայրերը, մանավանդ արքունի ձմերոցները, որոնք զորակայաններ էին՝ Գառնին, Երամոնսը և Դրասխանակերտ մեծ դաստակերտը, Օշական ամրոցը, Փառախոտը, Սարդյանը, Ձողակերտ ավանը, Արմավիրի բերդը, Կուաշ ավանը, Արուճը, Աշնակը...»)։

Թվարկված այս վայրերը արքայական տանը պատկանող կալված դաստակերտներ ու ամրոց-զորակայաններ էին, որոնք շրջան կազմելով Արարատ-

---

1 Խաշար հանել նշանակում է բնակչությանը պարտադիր կերպով աշխատանքի հանել արքունիքի կողմից ձեռնարկվող աշխատանքները կատարելու համար։

2 Ինճիճեան, Հնախօսութիւն, հտ. Գ, էջ 385, Ալիշան, Այրարատ, էջ 362։

3 Եղիշէի Վասն Վարդանանց և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 68։

4 Նույն տեղում, էջ 78—79։

յան դաշտի շուրջը, պաշտպանում էին այս արգավանդ և խիտ բնակեցված դաշտավայրը Արտաշատ և Վաղարշապատ մայրաքաղաքներով հանդերձ։

Եղիշեի վկայությունների համաձայն 450—451 թթ. Գառնի ամրոցը ավերածությունների է ենթարկվել, բայց Եղիշեն որոշակի ասում է, թե ավերվել էր ամրոցի բնակությունը, այսինքն, բնակության համար կառուցված շենքերը, իսկ ամրոցի պարսպի մասին ոչինչ չի նշում։ Հավանաբար պարիսպը չի քանդվել և ամրոցը, ինչպես և 481—484 թթ. ապստամբություններից հետո էլ մնացել է իբրև կարևոր զորակայան։ Դա երևում է Սեբեոս պատմիչի մի վկայությունից, որի համաձայն պարսից Խոսրով թագավորի ժամանակ՝ VI դարի վերջերին Գառնիում հաստատված պարսից զորքերը ապստամբում և սպանում են Հայաստանի սահմանակալ կամ մարզպան Խորականին[1], 591 թ., երբ Հայաստանը բաժանվեց պարսիկների և բյուզանդացիների միջև, ապա Բյուզանդիային անցան զգալի տերիտորիաներ, որոնց թվում սանուտերական տունը (Այրարատյան դաշտը) «մինչև ցգետն Հուրազդան, և զգաւառն Կոտէից մինչև ցաւանն Գառնի...»[2]։ Ուշագրավ է, որ այստեղ Գառնին ավան է կոչված։

607 թ. Աբրահամ կաթողիկոսի Դվինում գումարած եկեղեցական ժողովին մասնակցել են բազմաթիվ եպիսկոպոսներ, «վանից երեցներ», որոնց թվում նաև «Դաւիթ Երևանայ, Իսմայէլ Գառնոյ» վանից երեցները[3]։ Ուրեմն Արշակունյաց թագավորության անկումից հետո Գառնիում այլևս եպիսկոպոս չէր նստում, բայց Գառնիի վանքի առաջնորդը մասնակից էր լինում կարևորագույն եկեղեցական գործերի քննարկմանը, տվյալ դեպքում, Դվինի եկեղեցական ժողովին, որը հակառակ Մորիկ կայսեր ձգտումներին, մի անգամ ևս մերժում է քաղկեդոնականությունը։

Հայաստանի վրա գործած արշավանքների ժամանակ արաբները Հաբիբ իբն-Մասլամայի գլխավորությամբ (VII դարի կես) գրավեցին Դվինը և այնտեղից անցան Գառնի (Ջուրնի), ապա Աշոցք գավառը[4]։

Այս կապակցության մեջ Գառնին ներկայանում է իբրև կարևոր ամրություն և կենտրոն։ Հայտնի է, որ արաբները ավերել են Գառնի ամրոցը, բայց ե՞րբ, VII դարի կեսերին Հաբիբ իբն-Մասլամայի արշավանքների ժամանակ, որ պակաս հավանական է, թե VII դարի վերջերին—VIII դարի սկզբներին, երբ նրանք վերջնականապես գրավեցին Հայաստանը՝ ստույգ հայտնի չէ։ Համենայն դեպս VIII—IX դարերում Գառնի ամրոցը ավերակ է եղել և պարսպի քարերից շատերը սարվել, օգտագործվել են իբրև գերեզմանաքարեր ու նրանց վրա փորագրվել է VIII—IX դարերի համար բնորոշ խաչեր։ Ինչ վերաբերում է Գառնի ավանին, ապա նա պահպանում է իր գոյությունը նաև ամրոցի ավեր ժամանակ։

Արաբական տիրապետության ժամանակաշրջանում նախկին թագավորական ամրոց, ապա մարզպանական զորքերի զորակայան Գառնին, անցնում է Սյունյաց իշխաններին և մնում է նրանց ձեռքում մինչև Բագրատունի Աշոտ Բ թագավորի ժամանակները։

---

1 Սեբեոս, Պատմութիւն, Երևան, 1939, էջ 31։

2 Նույն տեղում, էջ 47։

3 Գիրք թղթոց, էջ 151։

4 Ах. Беладзори, из соч. „Книга завоевания стран", перевод проф. П. К. Жузе, Баку, 1927, стр. 10—11.

VIII դարի 30-ական թվականներին Գառնիի դեղանիստ ձորի մի քարայրում ճգնում էր Սյունյաց Ստեփանոս եպիսկոպոսի քույր Սահակադուխտը, որը աչքի ընկնող երաժիշտ էր և բանաստեղծուհի։ Խոսելով Ստեփանոս Սյունեցու մասին, Ստեփանոս Օրբելյանը ավելացնում է. «էր եւ սորա քոյր մի՝ ի մանկութենէ սնացեալ զվարս կուսութեան և առանձնացեալ ի ձորակին Գառնւոյ յայրի միոջ, և անտանելի վարս ճգնութեան կրէր յանձին. որոյ անուն Սահակադուխտ։ Սա յոյժ հմուտ էր երաժշտական արհեստին, որ և ի ներքոյ վարագուրի նստեալ ուսուցանէր բազմաց։ Եւ արար կցուրդս և մեղեդիս քաղցրեղանակս, յորոց մին՝ սրբուհին Մարիամ, որ իւրով անուամբն է յօրինեալ»[1]։ («Սա ուներ մի քույր, մանկությունից կուսության վարքը ստանձնած և առանձնացած Գառնի ձորակի մի քարայրի մեջ՝ ճգնության անտանելի կյանք էր վարում, որի անունն էր Սահակադուխտ։ Սա շատ հմուտ էր երաժշտական արվեստին, որը և սովորեցնում էր շատերին՝ նստած վարագույրի ետևում։ Եվ (նա) ստեղծեց քաղցրեղանակ մեղեդիներ և կցուրդներ, որոնցից մեկն էր Մարիամ սրբուհին, որը իր անունով է հորինված»)։

Գառնի ավանը և վանքը VIII—IX դարերում տվել են խոշոր եկեղեցական գործիչներ։ VIII դարի վերջերին (791) Հակոբ կաթողիկոսի մահից հետո «զՍողոմոն ածեալ կացուցանեն յաթոռ սրբութեանն։ Սա էր ի քաղաքագիւղէն Գառնւոյ, և ի մանկութենէ առեալ էր զլուծ կրօնաւորութեան կարգի... այլև վարժեալ իսկ էր ի փիլիսոփայական արուեստս և առաւել ես հմուտ լեալ փսաղտութեան կրթանաց[2]»։ («Սողոմոնին բերեցին և հաստատեցին սուրբ աթոռի վրա։ Սա Գառնի քաղաքագյուղից էր և մանկությունից ստանձնել էր կրոնավորության կարգի լուծը... վարժված էր նաև փիլիսոփայական արվեստի և առավել ևս հմտացած սաղմոսերգության կրթության մեջ»)։ IX դարի վերջին քառորդում (877—897) Հայաստանի կաթողիկոսն էր Գեորգը, «որ էր ի դիւղաքաղաքէն Գառնւոյ»[3]։ Ստեփանոս Տարոնացին ևս Գեորգի աթոռակալությունը հիշատակելով ասում է, թե «սա էր ի գիւղաքաղաքէն Գառնւոյ»[4]։ Սամվել Անեցին և Կիրակոս Գանձակեցին նույն կապակցությամբ Գառնին անվանում են գյուղաքաղաք[5]։

Գեորգին հաջորդած Մաշտոց կաթողիկոսը մեռել և թաղվել է Գառնիում. Ասողիկը ասելով «մերձ առ հովանոցին Խոսրովիդխտոյ, զոր էր շինեալ Տրդատայ Հայոց արքային»[6]։ (Խոսրովադխտի հովանոցի մոտ, որ շինել էր Տրդատ Հայոց արքան»)։

Նույնը գտնում ենք «Յայսմաւուրք»-ի հոկտեմբերի 13-ի ընթերցվելիքի մեջ, որտեղ ասված է, թե Մաշտոցը «վախճանեցաւ ի գիւղաքաղաքին Գառնի, և եդաւ պատուով մօտ ի հովանոց արքային Տրդատայ ի բերդն Գառնոյ ԳԽԶ թվ.»[7] («Վախճանվեց Գառնի գյուղաքաղաքում և պատվով թաղվեց Գառնի բերդում Տրդատ արքայի հովանոցի մոտ 346 (897) թվականին»)։

---

1 Ստեփանոս Օրբելեան, Պատմութիւն, էջ 139։

2 Հովհաննես կաթողիկոս, Պատմութիւն, Թիֆլիս, 1912, էջ 110, տե՛ս նաև Ստեփանոս Տարոնացի, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1888, էջ 106։

3 Հովհաննես կաթողիկոս, Պատմութիւն, էջ 137։

4 Ստեփանոս Տարոնացի, Պատմութիւն տիեզերական, էջ 110։

5 Սամուել Անեցի, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, էջ 95, նաև Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն, էջ 75։

6 Ստեփանոս Տարոնացի, Պատմութիւն տիեզերական, էջ 160։

7 Յայսմաւուրք հոկտեմբերի ԺԳ։

Կիրակոս Գանձակեցին ես ասում է, թե «եդաւ մարմին նորա (Մաշտոցի) ի դերեզմանի ի Գառնի հուպ առ զարմանալի թախտն Տրդատայ. և շինեցին ի վերայ նորա եկեղեցի վայելուչ»[1]։ («Նրա (Մաշտոցի) մարմինը դրվեց դերեզմանի մեջ Գառնիում Տրդատի զարմանալի թախտին շատ մոտ և շինեցին նրա վրա վայելուչ եկեղեցի»)։ Ուշադրավն այն է, որ Ասողիկը, «Յաամաւուրքը» և Գանձակեցին Տրդատի հովանոցը նույնացնում են Գառնիի հեթանոսական տաճարի հետ, որի կողքին իրոք պահպանվում են Մաշտոցի արձանագիր տապանաքարը և մատուռի մնացորդները։

Մաշտոցի մատուռը, որը ավելի վաղ աղբյուրներում չի հիշատակված և որի մասին խոսում է Կիրակոս Գանձակեցին, X—XI դարերի շինություն է թվում։ Հավանաբար XIII դ. գործ է նաև Մաշտոցի տապանաքարը, թեև ունի ՅԽԶ (897) թվակիր արձանագրություն։

Գառնին իբրև գյուղաքաղաք հիշատակված է Հովհաննես կաթողիկոսի մի այլ վկայության մեջ ևս՝ Այրիվանքի հարստությունները կողոպտելու կապակցությամբ։ Պատմիչն ասում է, թե վանքը գտնվում էր «այայրի անդ յարևելից հիւսիսոյ ղեղաքաղաքին Գառնոյ»[2]։ Վկայություններ կան, որոնք ցույց են տալիս, թե Գառնի գյուղաքաղաքը նշանավոր էր նաև իր խաղողի այգիներով։

Մեջբերված վկայություններից երևում է, որ Գառնին IX դարում, ավելի ստույգ, այդ դարի երկրորդ կեսում դառնում է գյուղաքաղաք։ X դարի և հետագայի պատմիչները նշում են հաակապես նրա գյուղաքաղաք լինելու հանգամանքը, որն ինչպես երևում է ավելի կարևոր էր նկատվում, իսկ ամրոցի մասին գրեթե չեն խոսում։ Հետագայում ևս Գառնին նշանակալից կերպով չաճեց և քիչ թե շատ աչքի ընկնող քաղաք չդարձավ։

Մատենագրական աղբյուրներում մինչև XV դարը Գառնին անվանվում է գյուղաքաղաք։ Իբրև այդպիսին նա վերջին անդը չէր գրավում, ընդհակառակը, առավել խոշոր և նշանակալից գյուղաքաղաքներից մեկն էր և փաստորեն ոչնչով չէր տարբերվում միջնադարյան Հայաստանի փոքր քաղաքներից և լինելով ավանդական վայր նախկին թագավորական ամրոց, նույնիսկ նրանցից շատերից ավելի էր հայտնի, ուստի և հաճախ է հիշատակվել գրավոր աղբյուրներում։

Գառնին բազմիցս հիշատակվում է IX—X դարերի անցքերի կապակցությամբ։ XI դարի հեղինակներից Գառնին հիշատակում է Ստեփանոս Տարոնացին, սակայն, IX դարի վերջերին տեղի ունեցած անցքերի կապակցությամբ, անվանելով այն գյուղաքաղաք[3]։ XII դարում նույնպես Գառնին գյուղաքաղաք է անվանված Հովսեփ Դվինցու (+ 1170) վկայության մեջ[4]։

Գառնիի վերաբերյալ ավելի շատ տեղեկություններ գտնում ենք XIII դարում։

XIII դարի 20-ական թվականներին Գառնիում տեղի է ունեցել պատմական մի նշանավոր անցք՝ ճակատամարտ Խորեզմշահ Ջալալեդդինի դեմ, որի վերաբերյալ տեղեկություններ հաղորդում են մի շարք հեղինակներ։

Պարտություն կրելով մոնղոլներից Խորեզմշահ Ջալալեդդինը խույս

1 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Երևան, 1961, էջ 81։

2 Հովհաննես կաթողիկոս, Պատմութիւն, Թիֆլիս, 1912, էջ 338—339։

3 Ստեփանոս Տարոնացի, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 106, 111, 160։

4 Հայոց նոր վկաները, Վաղարշապատ, 1903, էջ 60։

ավեց իրեն հետապնդող զորքերից՝ շարժվելով դեպի արևմուտք։ 20-ական թվականներին նա իր զորքերով սպառնաց Անդրկովկասի երկրներին։ 1225 թ. վրացական և հայկական զորքերը Գառնիում ճակատամարտի բռնվեցին Ջալալեդդինի հետ, սակայն, ճակատամարտը ողբերգական ելք ունեցավ։

Կիրակոս Գանձակեցին պատմում է, թե ինչպես Ջալալեդդինը Ատրպատականի միջով մտնում է Աղվանք, գրավում է Գանձակը և ներխուժում Հայաստան։ Նրա դեմ շարժվում են վրաց զորքերը Իվանե Աթաբեկի գլխավորությամբ[1]։ Այնուհետև Կիրակոսը գրում է. «Եկն ապա սուլտանն ի գաւառն Կոտայից։ Գնաց և Իւանէ յորօքն վրաց, և կայր հանդէպ նոցա ի վերոյ. և տեսեալ զնոսա՝ զանգիտեաց, ղետեղեալ ի տեղւոջն։ Իսկ սուլտանն՝ յառաջ վարեալ զզօրս իւր, գայր հանդէպ նոցա։ Եւ իբրև ղայն ետես իշխան մի յաւագացն վրաց, Շալուէ անուն նորա, և եղբայր իւր Իւանէ, արք քաջք և անուանիք, և յաղթողք ի պատերազմի, ասեն ցայլ զօրսն. «Դուք կացէք՝ մնացէք վայր մի, և մեք երթեալ խառնեսցուք ի նոսա. եթէ գարձուսցուք զոմանս ի նոցանէ յետս, մե՛ր է յաղթութիւն, եկայք և դուք. ապա թէ նոքա մեզ յաղթիցեն, փախերուք դուք և ապրեցուցէք զանձինս ձեր»։

Եւ իբրև խառնեցան նոքա սկսան կոտորել զօրս սուլտանին։ Իսկ զօրն վրաց այնմ ուշ ո՛չ եդին, այլ փախեան ի տեղւոջէ անաի, մինչև այր զընկեր ի փախուստ ո՛չ զիտէր. և երթեալք առանց ուրուք հալածելոյ ամենեքեան ի վախից ի վայր մղեալք՝ ի ձոր անդր լնուին ի գլուխս քաղաքագեղն Գառնւոյ։ Եւ իբրև տեսին զայն զօրքն սուլտանին, զհետ մտեալ՝ բազումս կոտորեցին, և զայլս գահավէժ արարին»[2]։

(«Սուլթանը եկավ Կոտայքի գավառը։ Գնաց նաև Իվանեն վրաց զորքով և կանգնեց նրանց հանդեպ՝ վերևից. և տեսնելով նրանց երկյուղեց՝ դիրք գրավելով այնտեղ. իսկ սուլթանը՝ հառաջ վարելով իր զորքերը գալիս է նրանց հանդեպ։ Եվ երբ այդ բանը տեսավ Շալվե անունով մի իշխան վրաց ավագներից և իր եղբայր Իվանեն, որոնք պատերազմներում հաղթող, տնվանի և քաջ մարդիկ էին, ասում են մյուս զորքերին. «Դուք այստեղ կացեք մնացեք մի առժամանակ, իսկ մենք գնանք խառնվենք նրանց. եթե նրանցից ոմանց փախուստի մատնենք (բառացի՝ ետ դարձնենք), հաղթությունը մերն է, եկե՛ք և դուք, իսկ եթե նրանք մեզ հաղթեն՝ դուք փախեք և փրկեցեք ձեր անձը»։ Եվ երբ նրանք խառնվեցին (թշնամուն) սկսեցին կոտորել սուլթանի զորքերին։ Իսկ վրաց զորքերը ուշադրություն չդարձրեցին դրան, այլ փախան այնտեղից, այնպես, որ մարդ իր ընկերոջ փախուստի մեջ չէր ճանաչում. և առանց մեկն ու մեկից հալածվելու գնացին բոլորը վախից դեպի ցած մղված՝ այնտեղ Գառնի քաղաքագյուղի գլխի ձորը լցվեցին։ Եվ երբ այդ բանը տեսան Սուլթանի զորքերը հետապնդելով՝ շատերին կոտորեցին և մյուսներին գահավեժ արեցին»)։

Ստեփանոս Օրբելյանը նույնպես նկարագրում է այս անցքերը ասելով, թե Ջալալեդդինը «եկեալ յԱյրարատեան գաւառ՝ բռնակ հարկանէր անդ. վասն որոյ ժողովեալ Իվանէ Աթաբէկին զամենայն զոյժ և զօրութիւն Հայոց և Վրաց՝ կամէր մարտիւ պատահել նոցա»[3]։

1 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն, էջ 224։

2 Նույն տեղում, էջ 224—225։

3 Ստեփանոս Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 399։ Տե՛ս նաև Մանր ժամանակագրություններ XIII—XVIII դարերի, հատ. 1-ին, կազմեց Վ. Ա. Հակոբյան, Երևան, 1951, էջ 39։

(«Գալով Այրարատյան գավառը, բանակ է դնում այնտեղ, որի պատճառով Իվանն Աթաբեկը հավաքելով հայոց և վրաց ամբողջ ուժն ու զորությունը, կամեցավ ձակաաամարտով գիմավորել նրանց»)։

Սահփանոս Օրբելյանը պատմում է, որ Ոալվեի գլխավորությամբ առաջապահ զորք է ուղարկվում թշնամու դեմ, սակայն, առաջապահների կռիվը հիմնական զորքին, թե դուք ես եկեք, հասկացվում է իբրև փախուստի ազդարարում, որի հետևանքով և աեղի է ունենում Գառնո եղեռնը։

Այս անցքերի՝ այսինքն թշնամու ռ̣ո̃ւ առաջընթաց զորք ուղարկելու և Իվանի զորքերի պարտության ու փախուստի մասին խոսվում է նաև XIV դարի վրաց անանուն հեղինակի ժամանակագրության մեջ, ըստ որում Գառնին անվանվում է դյուղ[1], որ ուրիշ ոչ մ̃ի աղբյուրում չի հանդիպում։

Վարդան Արևելցին պատմելով նույն անցքերի մասին, Գառնին անվանում է դյուղաքաղաք[2]։

XIII դարի հեղինակ Ստեփան եպիսկոպոսի սարեգրության մեջ նույն անցքերի առիթով Գառնին նույնպես անվանված է «քաղաքագյուղ»[3]։

Գառնիի ճակատամարտի և նրա աղետալի ելքի մասին մանրամասն պատմում է նաև Միխայել Ասորին, որն այդ կապակցությամբ Գառնին մի անգամ անվանում է գյուղաքաղաք[4], մի այլ անգամ, նույնիսկ քաղաք[5]։

Միխայել Ասորու պատմածի մեջ կա և ուշագրավ տեղեկություն այն մասին, թե Գառնիի բերդը և սարավույթը այդ ժամանակ կանգուն էին։

«Եհաս համբաւ Խորազմին,—գրում է Միխայել Ասորին,—և նոքա փութով ժողովեալ զօրս կամէին ելանել ընդդէմ նոցա ի դաշտամէջն Գառնի քաղաքոյ, զոր շինեաց մեծ արքայն Հայոց Տրդաա, բերդ և սարաւոյթ՝ ի մեծամեծ վիմաց թագաւորութեան իւրոյ, որ կայ անխախտելի մինչև ցայսօր»[6]։

(«Հասավ Խորեզմի (Խորեզմշահի) համբավը և նրանք շտապով հավաքելով զորքերը կամեցան ելնել նրանց դեմ՝ Գառնի քաղաքի դաշտամիջում, որը Հայոց Տրդատ մեծ արքան իր թագավորության ժամանակ շինեց բերդ ու սարավույթ՝ մեծամեծ քարերից, որը անխորտակելի մնում է մինչև այսօր»)։

Միխայել Ասորին միակ հեղինակը չէ, որ Գառնին անվանում է քաղաք։ XIII դարի արաբ աշխարհագիր Յակուտը Գառնի (Ջուռնա) բառի տակ գրում է «Քաղաք Հայաստանի կողմերում, Դաբիլի (Դվինի) մոտ»[7]։

Գառնին իբրև հայանի բնակավայր և գյուղաքաղաք XIII դարում հիշատակվում է նաև այն կապակցությամբ, որ ավել է գործիչներ, ինչպես կրոնական, նույնպես և հակաեկեղեցական-հակաֆեոդալական, գյուղացիական շարժումների բնադավառներում։

Կիրակոս Գանձակեցին պատմում է ոմն ճգնակյաց կրոնավոր Հովհաննիսի մասին, որն էր «ի քաղաքագիւղէն Գառնւոյ, ուր ղարմանալի սարաւոյթն է

1 Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին. Բ հատոր, Երևան, 1936, էջ 52։

2 Վարդան, Հաւաքումն պատմութեան, Վենետիկ, 1862, էջ 143։

3 Մանր ժամանակագրություններ, XIII—XVIII դդ., հատ. 1, էջ 39։

4 Միխայել Ասորի, Ժամանակագրութիւն, Երուսաղեմ, 1871, էջ 522։

5 Նույն տեղում, էջ 520։

6 Նույն տեղում։

7 Jacuts Geographisches Wörterbuch, Herausgegeben von Ferdinand Wüstenfeld, Leipzig, 1924, II, S. 65.

Տրդատայ, ի սուրբ ուխտէն Այրիվանայ»[1]։ Այրիվանքի անձուկ կրոնական միջավայրում դաստիարակված, կուսակրոն գառնեցի Հովհաննեսին վերագրվում էին աեսիլներ ու հրաշապատում զրույցներ, որոնց նպատակն է եղել փառաբանել հայերի գավանանքը և պայքարել մի կողմից՝ ընդդեմ հայերի գավանափոխության՝ հոռոմ (հունական) փոանգ կամ ասորի հավատի, մյուս կողմից՝ ընդդեմ կրոնական զգացմունքների թուլացման՝ բնակչության մեջ. որը նկատելի էր այդ ժամանակներում։

Հովհաննես Գառնեցին հոգևորականության հետամնաց տիրքերից պայքար է մղել նաև կրոնական դոգմաներից և սուրբ գրքի տառից կատարվող շեղումների դեմ, իսկ նման շեղումներ նրա ժամանակ սովորական երևույթ էին։ Հայտնի է, որ X—XIII դարերում ֆեոդալների և եկեղեցու դեմ աշխատավորների սուր պայքարի, լայն զանգվածների ինքնագիտակցության, քաղաքների զարգացման և հասարակական մտքի աշխարհականացման պայմաններում, հավատքը նկատելիորեն թուլացել էր և քրիստոնեական դոգմաները ու գաղափարները հանգիպում էին քննադատական վերաբերմունքի ու ենթարկվում փոփոխության, դրանից գերծ չէին նաև եկեղեցական պաշտոնական դրականության բնագրերը։ Շեղումների և փոփոխությունների ենթարկվել էին նաև սաղմոսները։

«ԶՍաղմոս Դաւթի, մանաւանդ թէ զերգս հոգոյն սրբոյ, այլ եւ այլ աւելի և պակաս նուագեն մանկունք եկեղեցւոյ, ոչ ուսեալ զճշմարիտն. և այս եղեւ յանհոգութենէ ոմանց, և ի սղալաղիր գրչաց. իրահամարձակք ոմանք մտայօղ իմացմամբ աարագրեցին գուղիղն և ղուղղորդն. նաև բաղում անգամ միճին ոմանք ի նուագելն զՍաղմոսս, և այլ ոմանք ծայրաքաղ առնելով բարբանջեն, անղեղջ սրաիւ և անիմաստ բայիւք... և Հայք՝ ի բերան առեալ ասեն վայրապար, քահանայք և ռամիկք և մանկունք և կուսեռք և հաւատաւոր կանայք...»[2]։

(Դավթի Սաղմոսները, մանավանդ թե սուրբ հոգու երգերը, ավելի այլեւայլ ձևերով և թերի են նվագում եկեղեցու աշակերտները (մանկունք) ճշմարիտը սովորած չլինելով. և այս եղավ ոմանց անհոգության և սխալագիր գրիչների պատճառով. հանդուգն ոմանք մտացածին կերպով (մտայօգ իմացութեամբ) փոխակերպեցին ուղիղն ու սաույգը. Սաղմոսները օրգելիս ոմանք նաև շատ անգամ միճում են, ուրիշները կցկտուր կերպով քաղ<sup></sup>ում են բաշբաջում, չզգչացող սրտով և անիմաստ բառերով... և հայերը բերանները առած՝ երգում են վայրարարո, քահանաները, ռամիկները, պատանիներն ու անչափահասները և կրոնավոր կանայք)։

Հովհաննես Գառնեցին գնալով Հաղրաա վանքը, գտնում է Հովհաննես Սարկավագի ձեռքով արտագրված հին՝ թարգմանչաց ժամանակների սաղմոսների բնագիրը, սաուգում, վավերական է հայտարարում այն և տարածում է հայերի մեջ իբրև պաշտոնական բնագիր, որը նրա անունով կոչվում է «Գառնեցի»։ Հովհաննես Գառնեցին գրել է նաև աղոթքներ, որոնց մեջ քարոզում է կրոնական մոլեռանդություն։

Միանգամայն այլ նկարագիր ունի Սյունիքի Ջերմուկ բերդի մոտ Ծար գյուղում 1250 թ. ծագած հակաֆեոդալական գյուղացիական շարժման ղեկավար

[1] Կիրակոս Գանձակեցի, Պատմություն, էջ 335։
[2] Ալիշան, Այրարատ, էջ 362։

*Դավիթը, որը հանդես էր եկել նաև պաշտոնական եկեղեցու դեմ։ Ընկած լինելով հոգևորականության ճանկը և հանդիպելով գառնեցիների, Դավիթը դիմում է վերջիններիս օգնությանը։ «Քանզի ասէր զինքն ազգակից նոցա և ի Գառնւոյ» (Քանի որ ասում էր, թե ինքը ազգակից է նրանց և Գառնեցի է)։*

*Ելնելով օտար և ներքին կեղեքողների դեմ և պայքարի հանելով աղքատներին Դավիթը ժողովրդի առջև հայտարարում էր, թե «յԱրշակունեաց ազգէն եմ ես, և պարտ է որդոց իմոց լինել միոյն թագաւոր և միւսոյն՝ կաթողիկոս»[1] (Արշակունիների տոհմից եմ ես և իմ որդիները պիտի լինեն մեկը՝ թագավոր, մյուսը՝ կաթողիկոս)։*

*Դավթի ղեկավարած շարժումը մնաց տեղական նեղ սահմաններում և ճնշվեց չծավալվելով նույնիսկ մերձակա շրջաններում։*

*Մեջբերված վկայություններից երևում է, որ X—XIII դարերի աղբյուրների և հեղինակների մեծագույն մասը Գառնին անվանում է գյուղաքաղաք, միայն երկու օտար հեղինակ են այն քաղաք կոչում։ Իրականում իր բնակչության թվով, տնտեսությամբ, արհեստների և առևտրի զարգացման մակարդակով Գառնին փոքր քաղաքից չէր տարբերվում։ Տվյալներ կան նաև այն մասին, որ բերդերի ու ավանների, առավել ևս գյուղաքաղաքների բնակչությունը վայելում էր այնպիսի արտոնություններ, որոնք սահմանված էին քաղաքային բնակչության համար՝ «ըստ պայմանի քաղաքականաց»[2]։ Բայց քաղաք կոչվելու համար Գառնին պետք է ունենար մի այլ հատկանիշ ևս՝ այն պետք է պարսպապատ լիներ, ըստ որում պարսպի մեջ առնված պետք է լիներ ոչ միայն բերդը կամ միջնաբերդը, այլև ամբողջ գյուղաքաղաքը, մինչդեռ պարսպապատ էր միայն Գառնի ամրոցը, իսկ նրա առջև փռված գյուղաքաղաքը անպարիսպ էր։*

*Գյուղաքաղաքի իր նշանակությունը Գառնին պահպանում էր նաև XIV—XV դարերում։*

*1321 թ. մի արձանագրության մեջ, որը փորագրված է Գառնիի դիմաց գտնվող Հավուց թառի սբ. Կարապետ անունով մի երկարավուն մատուռաձև շենքի վրա հիշատակվում է ոմն «Կարապետ որդի Տիրատրոյ ի շահաստան գեղջէս Գառնոյ»[3]։ Այստեղ ուշագրավն այն է, որ Գառնին անվանվում է շահաստան գյուղ, որ նշանակում է, թե այստեղ զարգացած են եղել արհեստներն ու առևտուրը։*

*1346 թ. արտագրված մի ձեռագրի հիշատակարանում Գառնին դարձյալ անվանված է «գեղաքաղաք»[4]։ Իսկ 1423 թ. Պողոս Բ. Գառնեցի կաթողիկոսի օրոք Այրիվանքում սկսվել և Գառնի գյուղաքաղաքում ավարտվել է մի Մաշտոցի արտագրությունը «Եւ եղև դրշութիւն սորա ի նախաորական սուրբ ուխտն՝ ի մեծն Այրիվանս, և կատարումն դորա՝ յաստուածապահ գիւղաքաղաքս Գառնի, առ դրան սուրբ և հրաշափառ Կաթողիկէիս և այլ սուրբ եկեղեցեացս ի թվ. ՊՀԲ (1423)»[5]։*

---

1 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Երևան, 1961, էջ 327—328։

2 Այս առթիվ տե՛ս մեր աշխատությունը «Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում», էջ 64—67։ Կիրակոս Գանձակեցի. Պատմութիւն, էջ 335։

3 Գ. Հովսեփյան, Հավուց թառի Ամենափրկիչը, էջ 16։

4 ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 351։

5 ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, մասն առաջին, էջ 303—304։

(«Եվ գրվեց սա նախապատվելի սուրբ ուխտի մեջ՝ մեծ Այրիվանքում, իսկ ավարտվեց այս գիրքը աստվածապահ Գառնի գյուղաքաղաքում՝ այս սուրբ Հրաշափառ կաթողիկէի և մյուս սուրբ եկեղեցիների դռանը ՊՀԲ (1423 թվականին»)։

Այսպիսով, Գառնին XV դարում ևս անվանվում է գյուղաքաղաք և նշվում է, թե այստեղ էլ կային մի քանի եկեղեցիներ, որոնց ավերակներն ու մնացորդները իրոք պահպանվում են գյուղի տարբեր մասերում։ Այստեղից են դուրս եկել մի շարք խոշոր եկեղեցական գործիչներ, դրանց թվում և երեք կաթողիկոս։

Մոնղոլական աղետալից տիրապետությունը իր բացասական հետևանքներն ունեցավ ողջ երկրի անտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման վրա։ Քայքայվեց ոռոգելի երկրագործությունը, անկում ապրեցին քաղաքները, որոնցից մի քանիսը ամայացան, իսկ մյուսները հազիվ պահպանում էին իրենց գոյությունը, շատերն էլ ավանների, գյուղերի վերածվեցին։ Եվ եթե Գառնին այս պայմաններում շարունակում էր մնալ իբրև գյուղաքաղաք, ապա դա բացատրվում է մասամբ այն բանով, որ Դվինի կործանումից հետո այդ երբեմնի խոշոր քաղաքի արհեստավորների մի մասը փոխադրվեց Գառնի։ Մեր այս ենթադրության հիմք է ծառայում ոչ միայն այս երկու կետերի մերձավորությունը, այլև Դվինի խեցեղենի անոթների արտադրությունը Գառնիում՝ Դվինի անկումից հետո, որը երևում է այդ տիպի, բայց XIII դարի երկրորդ կեսին և XIV դարի սկզբներին պատկանող խեցեղենի զգալի թվով բեկորների հայտնաբերումից։

XIV—XV դարերում Գառնին քանիցս ենթարկվում է ասպատակությունների և նույնպես անկում է ապրում։ Բայց ինչպես երևում է XV դարում Գառնիում հաստատված է եղել ինչ որ իշխանավոր, որը և թերևս արաբերեն մակագրությամբ դրամներ է հատել և շքաղյուսներով զարդարված շենք է կառուցել իր համար։

Թե ովքե՞ր են տիրել Գառնիին և նրա մերձակայքին, մասամբ պարզվում է մեզ հասած որոշ տեղեկությունների շնորհիվ։ Սիմեոն կաթողիկոս Երևանցին «Ջամբռ» նշանավոր աշխատության մեջ խոսելով Հավուց թառի Ամենափրկիչ վանքի և նրան ենթակա բնակավայրերի ու տէրութիւնների մասին, իրավացի նկատում է, թե վանքի և նրա կալվածների տերերը շարունակում էին մնալ Գրիգոր Մագիստրոս Պահլավունու տոհմի ներկայացուցիչները։ XV դարում Գառնի գավառին տիրացել էին ոմն «տաճիկ» Հեյդարի հետնորդները, որոնք զավթել էին նաև Հավուցթառի վանքի տիրույթները։ 1487 թ. վանքի առաջնորդ՝ Պահլավունի տոհմից ծագող Զաքարիա վարդապետը որոշ գումար վճարելով Գառնու գավառի տեր՝ Հեյդարի թոռ Ամիրզամալ Արղինբեկին ետ է գնում վանքին պատկանող 9 գյուղերը, որոնցից 5-ը վանքին պետք է վճարեին բոլոր տեսակի հարկերը՝ ամբողջությամբ (վեց դանկ), իսկ Կոխպը (այժմ Գողթ)՝ հարկերի կեսը (երեք դանկ)։ Այս առթիվ Սիմեոն Երևանցին գրում է.

«Ի յաղագս վերոյ գրեալ Գրիգոր Մագիստրոսին՝ մի զկնի միոյ յաջորդելով՝ նստի առաջնորդ ի վանքս այս ի նոյն ազգէն Հայոցթառու Զաքարիա վարդապետն... Արդ այս Զաքարիա վարդապետս զվեց դանգ մուլքս այսոցիկ. այս ինքն, Մանկուս, Աւանիկ, Կուտիս, Հայոցթառ, Կուտուց վանք, Աւանասար, Թառնիս, և սուրբ Սարգիս կոչեցելոյ գեօղորէիցս. և Կոխպը երեք դանգ մուլքն, որք են հինն գեօղք, ի տաճկէ միոջէ, որ կոչի Ամիրքեամալ Արղինբէկ,

որդի Նաւրուզի որդւոյ Հէյդարի՝ հինգ հազար դենարի, ի ՊՂԴ թուին տաճկաց և ի ՋԼԶ թուոջն մերում, զորոյ զզապալայն գացես ցուցական...։ Յորում գրին իւրաքանչիւրքն յատուկ յատուկ սահմանօքն իւրեանց, որք են ի Գառնւոյ նահանգոջն»[1]։

(«Վերոհիշյալ Գրիգոր Մագիստրոսի տոհմից՝ մեկը մյուսից հետո հաջորդելով՝ առաջնորդ է նստում այս վանքում նույն Հայոցթառ գյուղից Զաքարիա վարդապետը... Արդ՝ այս Զաքարիա վարդապետը սրանց, այսինքն Մանկուս, Ավանիկ, Կուտիս, Հայոցթառ, Կուտուց վանք, Ավանասար, Թառնիս, ե սուրբ Սարգիս գյուղերի վեց դանկ մուլքը և Կոխդի երեք դանկ մուլքը, որոնք են ինը գյուղ (դնեց) մի տաճիկից, որը կոչվում է Ամիրքյամալ Արդին բեկ, որդի Նավրուզի որդո Հեյդարի՝ հինգ հազար դինարով, տաճկաց ՊՂԴ (894) թվին ե մեր ՋԼԶ (936)=1487 թվականին, որի կալվածագիրը կգանես ցուցակում... Որի մեջ գրված են յուրաքանչյուրը առանձին-առանձին իրենց սահմաններով, որոնք գտնվում են Գառնո գավառում»)։

Վանքի համար ձեռք բերված գյուղերը Զաքարիան կապալագրով ձևակերպում է իր անվամբ, քանի որ վանքը իր կալվածներով նույնպես հանդիսանում էր Մագիստրոսի տոհմի ժառանգական սեփականությունը, թեև այս իշխանական տան շառավիղները արդեն հանդես էին գալիս հոգևորականի սքեմով։

«Արդ՝ Զաքարիա վարդապետս զայսոսիկ ի յառնուլն, յիւր անունն առնու, և զանուն Ամենափրկչին ոչինչ յիշէ ի զապալայոջն, և զվախմ անուն ինչ ո՛չ գրեցուցանէ. որոյ պատճառն է՝ զի սոքա ի բնէ անձի ազատազունք էին և անուանիք, շատազգ և հարուստք, յորոց թէպէտ ոմանք վանականք լինէին, ոմանք աշխարհականք, սակայն մի էին տամբք և ընչիւք, և իւրեանց էր համարեցեալ դեօղս և վանքն առանց խտրութեան։ Վասն որոյ և ինքն մինչ առաջնորդ իսկ էր սոյն վանքիս, որպէս առ վասն վանքիս առնոյր զայսքան մուլքս, թէպէտ յանուն վանքին վախմ ոչ գրեցուցանէր ի միամտութենէն»[2]։

(Արդ՝ այս Զաքարիա վարդապետը սրանք գնելիս, իր անվամբ է գնում և Ամենափրկչի անունը կալվածագրերի մեջ բոլորովին չի հիշատակում, և վախմ (եկեղեցական կալված) անունով չի գրանցում, որի պատճառն է՝ որ սրանք ի բնե ազատազուն էին ու անվանի, բազմազգ և հարուստ, որոնցից մի քանիսը թեպետ վանական էին դառնում, մյուսները՝ աշխարհական, սակայն տոհմով և ունեցվածքով մեկ էին, և իրենցն էր համարվում գյուղն ու վանքը՝ առանց խտրության։ Որի պատճառով, քանի որ հենց ինքն էլ վանքի առաջնորդն էր, որպես թե վանքի համար գնեց այնքան մուլքերը, թեև վանքի անունով վախմ չգրանցեց՝ տարակուսանք չունենալով)։

Այսպես մենք ունենք մի ցայտուն օրինակ, թե ինչպես հոգևորականի սքեմ զգեցած ֆեոդալները XV դարում կարողանում էին պահպանել իրենց տիրույթները, նորից և նորից իրենց վրա հաստատել տալով դրանք[3]։ Տվյալ

---

1 Սիմեոն Երեւանցի, Ջամբռ, էջ 277։ Գառնո «նահանգը» ընդարձակ էր և նրա մեջ մտնում էր նաև Արտաշատի շրջանը։ Տե՛ս նույն տեղում, էջ 280։

2 Նույն տեղում, էջ 277։

3 Այս կալվածագիրը Շահ Իսմայիլ Բ-ի օրոք 1577 թ. վերահաստատվել է «Բաբայի որդիներ Զաքարիա վարդապետի և Միր Թոմանի (?), Խոջայի որդի Ջիգլասի և Թունիի որդի Մեհբարի» անունով նշվելով, որ այդ ինը գյուղերը հիշյալ անձնավորությունների օրինական ժառանգի մուլքերն են։ Տե՛ս Մատենադարանի պարսկերեն վավերագրերը, 1-ին. Հրովարտակներ. պրակ առաջին (ԺԵ—ԺԶ դդ.), Երևան, 1956, էջ 67—68։

դեպքում, սակայն, մեզ հետաքրքրողը այդ հարցը չէ, այլ այն, որ Գառնու գավառին XV դարում տիրում էր Ամիրբյամալ Արդին բեկը (գուցե և նրանից առաջ նրա հայրն ու պապը), որի իշխանությունը բավականաչափ ընդարձակ էր (Օշականն էլ է նա ուրիշին վաճառել)։ Ելնելով այս ամենից, կարելի է ենթադրել, թե այս Արղին բեկը կամ սրա մերձավորները հաստատված են եղել Գառնի ամրոցում, ուր թերևս նրանց են պատկանել այնպիսի շենքեր, որոնց արտաքին հարդարման համար օգտագործվել են նախնապակյա շքաղյուսներ, որոնց նմուշները հայտնաբերվել են ամրոցի պեղումների ժամանակ։

Հայ ժողովրդի վիճակն ավելի ծանրացավ XVI դարում, մինչև XVII դարի 30-ական թվականները. երկիրը դարձել էր անընդհատ պատերազմների և ասպատակությունների ասպարեզ։ Օտար տիրապետողների ծանր լծի տակ հեծող ժողովուրդը ենթարկվում էր անասելի կամայականությունների, հալածանքների, ասպատակության, կողոպուտի և գերեվարության։ Նրա գրագետ զավակներին մնում էր հիշել, որ միշտ այդպես չի եղել, որ հայերն էլ ունեցել են իրենց պետականությունը, շեն երկիրը, համեմատաբար խաղաղ կյանք և երազել, որպեսզի կրկին այդ դրությունը ստեղծվի։ Այս գաղափարներով է տոգորված Սիմեոն Ապարանցու ողբը, որը նվիրված է Տրդատ թագավորի թախտին, և որի մեջ նկարագրվում է «երկաթագամ կապարակապ» հեթանոսական տաճարը, որն այն ժամանակ (1593) դեռևս կանգուն էր, պահպանված լինելով իբրև պալաս կամ «ամարանոց, հովանոց»[1]։

Գրիգոր Դարանաղցին խոսելով Սիմեոն Ապարանցու մասին ասում է. «Եւ էր յաշտկերտացն հետևակ Ներսէսին և էր բանիբուն և իմաստասէր և բանաստեղծ և տաղասաց, որ զմեծին Տրդատայ զարմանալի սարաւոյթն, այսինքն դպաղատն, որ է ի գիւղաքաղաքին Գառնի, նա զեղեցկայարմար յոճով յոյժ վայելչապէս զովասանական երգով ողբերգախառն դրուատեաց է։ Որպէս մեք այլ արժանացաք սուրբ տեղոյն տեսութեան, որ Մաշտոց վարդապետին և մեծ վարդապետին Գէորգայ գերեզմանատուն եկեղեցին կից և հուպ է սարաւոյթին»[2]։

(«Եվ (սա) Ներսեսի աշակերտներից ու հետևորդներից էր և բանիբուն փիլիսոփա, բանաստեղծ և տաղասաց, որ Տրդատ Մեծի զարմանալի սարավույթը, այսինքն պալատը, որը Գառնի գյուղաքաղաքում է. նա գեղեցկահարմար ոճով շատ վայելուչ կերպով ողբերգախառն գովասանական երգով դրվատել է։ Ինչպես և մենք արժանացանք այդ սուրբ տեղերի տեսությանը, որ Մաշտոց վարդապետի և Գեորգ մեծ վարդապետի գերեզմանատուն եկեղեցին կից և կպած է սարավույթին»)։

XVI դարի սկզբներին Այրարատյան նահանգը, մասնավորապես Կարբին, Օշականը ենթարկվում են Ջալալի փաշայի (որին անվանում էին Թոփալ Օսման փաշա) ասպատակությանը։ Ասպատակները ծանր հարկապահանջությանը զուգակցում էին կապուտ-կողոպուտի հետ։ Հիշյալ վայրերի բնակչությունը մասամբ փախչում է դեպի Գառնի։ Այստեղ գյուղի մոտի քարայրում հավաքվում է 500-ից ավելի մարդ։ Ասպատակելով Գառնին ջալալիները ծուխ դնելով քարայրի առջև ծխահեղձ են անում քարայրում ապաստանածներին։ Մի գյուղացի թշվառներին փրկելու համար, կատարում է անձնազոհ արարք՝ բնակչության անասունների տեղը ջալալիներին ցույց տալու պատրվա-

1 Ալիշան, Այրարատ, էջ 368—369։

2 Գրիգոր Կամախեցի (Դարանաղցի), էջ 376։

*կով նրանց տանում է Քոռադարա կոչվող ձորը, որից օգտվելով պտշարված բնակչության պաշտպանները այրից հանելով ծխահեղձներին և ձյունով տրորելով ու ջրով շփելով շատերին փրկում են մահից*[1]։

*Գրիգոր Դարանաղցին, ինչպես երևում է Գառնին գյուղաքաղաք է անվանում ավանդաբար, քանի որ այդ ժամանակներում քանիցս ասպատակությունների զոհ դարձած Գառնին արդեն վերածվել էր գյուղի, որպես և անվանում է նրան Առաքել Դավրիժեցին XVII դարի սկզբի անցքերի կապակցությամբ։ Պատմելով Շահ Աբբաս Ա-ի հրամանով մի քանի նահանգների շուրջ 300 հազար հայ բնակչությունը իր դարավոր շեն բնակավայրերից տեղահան անելու և դեպի Իրան դաղթեցնելու ողբալից անցքերի մասին՝ Դավրիժեցին ասում է, թե Շահ Աբբասը Ամիրգունա խանի գլխավորությամբ զորքեր ուղարկեց գաղթեցնելու նաև Գառնո գավառի բնակչությանը։ Զորքերը մտնելով «ի գիւղն Գառնի, և ոչ ըստ հրամանաց թագաւորին առնէին, այլ որպէս դդերևվարս և աւարառուս սկսան յափշտակել գինչս և ըստացուածս քրիստոնէից։ Եւ զայն տեսեալ բնակչաց գեղջն ձայն տուեալ միմեանց՝ և արարեալ ամբոխ մեծ, սրով և բրով, քարիւ և փայտիւ հարեալ վիրաւորեալ կառափնատեցին զնոսա՝ և ի բաց վարեցին յինքեանց»*[2]։

*(Պարսիկները մտնելով «Գառնի գյուղը ոչ թե ըստ թագավորի հրամանի էին գործում, այլ որպես դերևվարներ և ավարառուներ, սկսեցին հափշտակել քրիստոնյաների ունեցվածքն ու ղավակներին։ Սա տեսնելով այդ գյուղի բնակիչները՝ իրար ձեն տալով և մեծ ամբոխ կազմելով սրով ու բրով, քարով ու փայտով հարվածելով, վիրավորելով գլխատեցին նրանց և հեռու քշեցին իրենցից»)։*

*Փախուստի մատնված թշնամու զորքերը դիմում են Ամիրգունա խանին, «որոյ սրամտեալ բարկութեամբ մեծաւ, առեալ ընդ իւր զօրս յոլովս եկն ի գաւառն Գառնւոյ, և նախ զնոյն Գառնւոյ գեղջ զարսն ըմբռնեալ էարկ ի խոշտանգանս չարչարանաց հարմամբ գանից, և հատմամբ յօդից, և իսկոյն չուեցուցեալ եա ի ձեռս զօրականաց իւրոց ասնիլ խառնել զնոսա ի չուս ժողովրդոցն ի մեծ բանակն։ Զոր և տարեալ խառնեցին ի չուս ժողովրդեանն, որք ընդ նոսին գնացին յաշխարհն Պարսից»*[3]։

*(«Որը զայրացած մեծ բարկությամբ, վերցնելով իր հետ շատ զորք եկավ Գառնի գավառը և ամենից առաջ նույն Գառնի գյուղի տղամարդկանց բռնելով՝ խոշտանգումների ու չարչարանքների ենթարկեց՝ գանահարությամբ և հոդերը կտրելով և իսկույն դաղթեցնելով ավեց իր զորականների ձեռքը, որ նրանց տանեն խառնեն ժողովուրդների դաղթին, (իրենց) մեծ բանակում։ Որոնց տանելով խառնեցին ժողովրդի դաղթին, որոնք նրանց (մյուսների) հետ միասին գնացին պարսից աշխարհը»)։*

*Դավրիժեցին պատմում է, թե հազարավոր մարդիկ Գառնիից և շրջակա գյուղերից ապաստան են գտնում ձորերում ու քարայրներում, մասնավորապես Քոռառարա մեծ ձորի Նախրշիան կոչվող այրում։ Զինված տղամարդիկ մարտի են բռնվում պարսիկների հետ, սակայն թշնամու գերազանց ուժերը բարձրանում են սարը և 300-ական խմբերով գոտի առ գոտի իջնելով հասնում են քարայրի դռանը, ապա չորս մարդու, ոտից գլուխ երկաթե զրահներ*

1 *Առաքել Դավրիժեցի, Պատմություն, էջ 81—83։*

2 *Նույն տեղում, էջ 47։*

3 *Նույն տեղում։*

հաղցնելով թոկերով իջեցնում են քարայրը։ Երբ քարայրի պահապաններն շտապում են վտանգը կանխելու, թշնամին հետապնդելով նրանց խուժում է քարայրը, ուր սկսվում է սոսկալի կոտորած։ Պարսիկները չեն խնայում նույնիսկ կանանց և երեխաներին։ Երիտասարդ տղաներն ու աղջիկները փակելով իրենց աչքերը, բարձր քարայրից իրենց անդունդն են նետում՝ ազատվելով մահը անպատվությունից և գերությունից։ Շատ շատերը զոհ են գնում պարսից զորքերի անողոք և վայրագ սրին, մնացածներին պարսիկները գերի են վարում։ Պատմիչը դառնացին ողբում է այս չար աղետը և մխիթարության եզերք չի անսնում[1]։

Այս դեպքերը նկարագրված են նաև XVII դարի մի անանուն ժամանակագրության մեջ։

«Դարձեալ պատմեմ ձեզ և այլ բան աղէտի և ողբերգութեան ի յամուր լերինք Գառնոյ և Այրիվանաց և Վանաստանայ բազում ժողովուրդ ղօղեալ և թաքուցեալ էին, մինչ դեռ ի միում բարձրաբերձ այրի ամրացեալ յապահով և անհոգ նստէր մասն ինչ ի ժողովրդենէն. յանկարծ անսին, որ անօրէն զօրքն Պարսից սուսերամերկ ի մէջ նոցա թափեցան. և սկսան զպարսկական սուրն ի գործ ածել, իսկ քրիստոնէիցն ի յահէ սրոյն կամաւ զինքեանս ի վայր արկին յանհուն բարձրութիւնէն՝ արք և կանայք, ծերք և տղայք։ Յայնժամ մի ոմն ի միջի նոցա երաժիշտ և քաջ փողահար աղաչեաց ղլինուորքն դադարել ի կոտորելոյն և ինքն եդեալ ի բերան բզզուոնտն ողորմ ձայնիւ երգեաց զդամբանական և զգերեզմանական ողբն ի վերայ նոր մեռելոցն, որ ի յաստկ քարանձաւին, ոմանք մեռեալք և ոմանք ի յելս հոգոյն ի յարեան ճապաղիս թաւալեալք ջուր խնդրէին և ոչ ոք էր, որ արբուցանէր նոցա...»[2]։

(«Դարձյալ պատմեմ ձեզ աղետի և ողբերգության մի այլ բան՝ Գառնո, Այրիվանքի և Վանաստանի ամուր լեռներում փախել թաքնվել էր բազում ժողովուրդ, մինչդեռ ժողովրդի մի մասը մի բարձրադիր այրի մեջ ամրանալով ապահով և անհոգ նստած էր, հանկարծ անսան, որ պարսից անօրեն զորքը սուսերամերկ թափվեց նրանց մեջ և սկսեց պարսկական սուրը գործի դնել, իսկ քրիստոնյաները սրի ահից կամովին իրենց վայր նետեցին անհուն բարձրությունից՝ տղամարդիկ և կանայք, ծերեր ու երեխաներ։ Այն ժամանակ նրանց միջից մեկը՝ երաժիշտ և քաջ փողհար աղաչեց զինվորներին դադարել կոտորելուց և ինքը զուռնան բերանին դնելով ազիողորմ ձայնով երգեց (նվագեց) դամբանական և գերեզմանական ողբը նոր մեռելների վրա, որ քարանձավի հատակին էին. ոմանք մեռած, ոմանք հոգին տալու վրա հոսող արյան մեջ թավալված ջուր էին խնդրում և ոչ ոք չկար որ ջուր տար նրանց...»)։

Եղեռնը հաջորդում էր եղեռնին, մինչև Գառնին կործանվեց և ամայացավ։ 1630-ական թվականներին կրկին տեղի էին ունենում պատերազմական լայնածավալ գործողություններ Իրանի և Թուրքիայի միջև։ 1636 թ. Սուլթան Մուրադը գրավել էր Բաղդադը և շարժում էր իր զորքերը դեպի արևելք։ Հայաստանը կրկին հանդիսանում էր պատերազմի թատերաբեմ և ոտնակոխ էր արվում, ավերվում ու կողոպտվում. հայ բնակչությունը կոտորվում էր, գերի տարվում։ Պատերազմում թուրքերին օգնում էին Ղրիմի թաթարական խանի ուղարկած զորագնդերը, որոնց իրավունք էր վերապահված կողոպտի հա-

[1] Առաքել Դավրիժեցի, Պատմութիւն, էջ 49—52։
[2] Մանր ժամանակագրություններ, XIII—XVIII դդ., հատ. 1, էջ 184։

մար բաժին ստանալ այս կտոր այն գավառը։ 1638 թ., երբ Օսմանյան զորքերը իրենց մեջ բաժանեցին դեռես չկողոպտված գավառները, Գառնին իր մերձակա գյուղերով բաժին ընկավ թաթարական գնդերին և ենթարկվեց վայրագ կոտորածի ու կողոպուտի։

Գրիգոր Դարանաղցին պատմում է. «Եւ ի Գառնոյ ի վայր զմօտահաս դեղօրէքն ի վերի՝ վարեցին և յաւարի առին զորս գտին՝ թէ հայ, թէ տաճիկ. զերկիրն և զանասուն այլ, և լցին պգաշտն վայիւ և աղաչակաւ և անասնոց բառաչմամբ»[1]։

(«Եվ սկսած Գառնիից դեպի ցած մոտակա գյուղերով գերի վարեցին և ավարի ենթարկեցին, ում որ գտան՝ թե հայ, թե տաճիկ, նաև երկիրը և անասունները, այլև լցրեցին դաշտը լացով ու աղաչանքով և անասունների բառաչով»)։

Ով փրկվել էր պարսից զորքերի կոտորածից և գերեվարությունից զոհ է դառնում թաթարների սրին. բնակչության մի մասն էլ գերի է տարվում։

Գառնին կողոպտվում, հիմնահատակ ավերվում ու ամայանում է։

1638 թ. ավերածությունից հետո Գառնին իբրև շեն բնակավայր այլևս չի հիշատակվում։ Ճիշտ է Մատենադարանի № 1858 (1827 ձեռագրում), որի հեղինակն է Սիմեոն Երևանցին ՌԾ (1659) թվականի տակ հիշատակվում է թե Գառնո եպիսկոպոսն էր Ջուղայեցի Սիմեոն վարդապետը, որին հեղինակը անվանում է գերիմաստ գիտնական, քերական՝ պատմաբան[2]։ Իսկ Աբրահամ Կրետացին XVIII դարի երեսնական թվականներին հիշատակում է Գառնո, Ծաղկաձորոյ, Գեղարքունոյ, Ապարանու և Շիրակավանոյ մելիքներին։ Սակայն բնագրից երևում է, որ խոսքը վերաբերում է Գառնո գավառին[3]։ Ինչպես երևում է Գառնիում պահպանվում էին եկեղեցիներ, և կային եկեղեցականներ, քանի որ Աբրահամ Կրետացին այցելելով մի շարք եկեղեցիներ 1734 թ. երկուական օր գիշերել է Հավուց թառում և Այրիվանքում և մի օր էլ Գառնիում[4]։

1638 թ. հետո XVII—XVIII դարերում առհասարակ հիշատակվում է Գառնո գավառը, իսկ օտարերկրյա ճանապարհորդները XVIII դարում և XIX դարի սկզբներին այցելելով Գառնի, հիշատակում են միայն նրա հին հուշարձանները։ Նրանցից Կեր Պորտերը, ինչպես կտեսնենք, նշում է նաև գյուղի ավերակ և ամայի լինելը։

Գառնիի հուշակավոր հեթանոսական տաճարը կանգուն էր մինչև 1679 թ. և կործանվեց ուժեղ երկրաշարժից նույն թվականի հունիսի 4-ին։

Զաքարիա Քանաքեռցին այդ առթիվ գրում է.

«Ի թուին ՌՃԻԸ ի յունիս ամսոյ Դ... յանկարծակի գոռաց երկիր որպէս ամպքն. եւ գոռալոյն ահագին թնդմամբ շարժեցաւ. երկիրն Արարատեան առհասարակ դողայր և երերիւր... և եկեալ շարժս այս ի կողմանց Գառնւոյ՝ և փլան ամենայն շինուածք և գեղեցկայարկ բնակութիւնք, և վանորայք, և եկեղեցիք։ Այսոքիկ են աւերեալ եկեղեցիք, Աղշոց-վանք, Այրի-վանք, Հաւուցթառ, Տրգակերտն (Տրգաակերտն), Խորվիրապն, Ջրվեղ, Զագավանք, երեք

---

1 Ժամանակագրութիւն Գրիգորի վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղեցւոյ, էջ 579։
2 Գ. Հովսեփյան, Հավուց թառի Ամենափրկիչը, էջ 82, ծան. 1։
3 Աբրահամ Կրետացի, էջ 62։
4 Նույն տեղում, էջ 6։

*եկեղեցիք յԵրևան, Նորագաւիթ, Նորագեղ, Ջորագեղ, Նորք, Գամրէղ և բերդն Երևանայ ի հիմանց տապալեցաւ, մզկիթ և մինարայք...»*[1]:

*(«ՌՃԻԸ (1679) թվականի հունիս ամսի 4-ին... երկիրը հանկարծակի դողաց ինչպես ամպերը. ղողալուց հետո ահագին թնդյունով շարժվեց. ամբողջ Արարատյան երկիրը դողում էր և երերում... և այս երկրաշարժը եկավ Գառնու կողմերից, և փլվեցին բոլոր շինվածքները և գեղեցկահարկ բնակարանները և վանքերն ու եկեղեցիները: Սրանք են ավերված եկեղեցիները՝ Աղչոց-վանք, Այրի-վանք, Հավուց-թառ, Տրդակերտը (Տրդատակերտը), Խորվիրապը, Ջրվեղ, Ջաղավանք, երեք եկեղեցի Երևանում, Նորագավիթ, Նորագեղ, Ջորագեղ, Նորք, Գամրեղ և Երևանի բերդը հիմնիվեր կործանվեց (նաև) մզկիթ և մինարեներ»):*

*Ավերվում է նաև Քանաքեռ, որտեղ, պատմիչի ասելով, 1228 մարդ զոհվեց. մեծ վնասներ եղան Կարբի գյուղաքաղաքում, վնասվեց Հովհաննավանքը, ավերածություններ և զոհեր եղան շատ այլ գյուղերում*[2]:

*Պատմիչի հիշատակած Տրդատակերտը կամ Տրդատաթախտը Գառնիի հեթանոսական տաճարն է, ինչպես նա կոչված է մյուս պատմիչների մոտ ևս: XVIII դարի մի անանուն ժամանակագրությունից այդ բանը երևում է ավելի քան որոշակի: Խոսելով նույն երկրաշարժի մասին, անանուն հեղինակը գրում է. «Սաստիկ շարժ եղև յԵրևան և ՑՌ (8000) մարդ մեռան և Հաւուց թառու եկեղեցիքն և Գեղարդին և Գետարգելին փլան և Տրդատայ թախտն ի Գառնի ի հիմնէ կործանեցաւ և այլ բազում եկեղ[ե]ցիք և ապարանք յատակեցան»*[3]:

*(«Սաստիկ երկրաշարժ եղավ Երևանում և 8000 մարդ մեռավ, և Հավուցթառի և Գեղարդի և Գետարգելի եկեղեցիները փլվեցին և Տրդատաթախտը Գառնիում հիմքից կործանվեց, և այլ բազմաթիվ եկեղեցիներ ու ապարանքներ գետնին հավասարվեցին»):*

*Եվրոպական ճանապարհորդներից Գառնի են այցելել Տելֆերը, Ջեյմս Մորիերը, Կեր Պորտերը և Դյուբուան:*

*Գառնի տաճարի մասին խոսում է և Շարդենը, որը չի եղել Գառնիում և տալիս է թյուր տեղեկություններ իր լսածների հիման վրա:*

*Տելֆերը (*Buchan Telfer*) եղել է Գառնիում, նա լսել է, որ հեթանոսական տաճարը կործանվել էր երկրաշարժի հետևանքով: Գառնիում գտել է վրացական դրամներ և տեսել է մի պղնձյա անոթ «Միրզախանի որդի Պետրոս ՈՄԻԱ» (1772) մակագրությամբ»*[4]:

*Ջեյմս Մորիերը այցելել է Գառնի 1812 թ. օգոստոսին: Նա գրում է, թե «Գառնիում տեսնվում են մի բերդի ավերակներ, բաղկացած մի դռնից և երկար տարածությամբ պարիսպներից»: Նա տեսել է Գառնիի հռնիական ոճի տաճարը, որը «ունենալով հռոմեական վարպետության բոլոր նշանները, բոլորովին օտար է պարսկական կամ հայկական որևէ բանի»*[5]: *«Բերդի դուռն ու պարիսպները նմանապես իրենց ծագումով պատկանում են ավելի մեծ հնության, քան ընդհանրապես հայկական ավերակներն են, և դատելով իրենց*

---

1 *Զաքարիա Սարկավագի Պատմություն, Վաղարշապատ, հատ. երկրորդ, 1870, էջ 104:*
2 *Նույն տեղում, էջ 104—105:*
3 *Մանր ժամանակագրություններ,* XIII—XVIII *դդ., հատ. 1-ին, Երևան, 1951, էջ 327:*
4 Telfer Buchan, The Crimea and Transcaucasia, vol. I, 1876, էջ 220—222:
5 *Հով. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Ձ. Երևան, 1934, էջ 346:*

որմնադրության տոկունությունից, չափից, հարմարությունից, և զանգվածի յավ վարպետությունից, նրանք փաստորեն ժամանակակից են հոնիական շենքին»[1]։

Ավելի ուշագրավ են Կեր Պորտերի վկայությունները։ Նա 1819 թ. հոկտեմբերի 20-ին ժամանելով Գառնի գրում է, թե այստեղ պարիսպներ ու աշտարակներ են կառուցված, կազմված ժայռի հսկա կտորներից, գեղեցկորեն տաշված ու միացված հռոմեական բանվորների վարպետությամբ, որոնք, ասում են, թե եղել են ճարտարապետները։ Նրա (բերդի) պաշտպանության հյուսիսային գիծը բաղկանում է կիսաշրջանակ պարսպի ու աշտարակների մի շարքով, որ մրանում է արևելյան ու արևմայան զառիվայրերին։ Միայն մի դռան հետքն է տեսնվում և հավանորեն ուրիշ դուռ չի եղել. և դա շատ հեռու չէ երկրորդ կամ արևելյան աշտարակից։ Պարիսպներից ներս զետեղված է արքայական պալատը, որի ավերակներից սակավին շատ բան է տեսնվում, բազմաթիվ ավելի խոնարհ շենքերի կույտերի միջում»[2]։

Խոսելով պալատի, կամ ինչպես ճիշտ նկատել է տաճարի մասին Կեր Պորտերը ասում է, թե «նրա մոտ կան քարե հիմքի բավականին զանգվածներ, որ տարածվում են դեպի հյուսիս և արևմուտք, բայց նրանց մեջ զարդարուն բեկորներ չին տեսնվում։ Ամենից ուշագրավը հայոց թագավորի պալատի մասն է»[3]։

Կեր Պորտերը շարունակում է. «Դեպի հյուսիս, փլփլած պարիսպների մոտ տակավին նկատելի են հարձակման հին գործիքների տարօրինակ մնացորդները, այսինքն քարե կոպիտ գնդակներ, որոնք մեր ամենամեծ ռումբերի տրամագծից ավելի խոշոր են...»[4]։ «Հյուսիսային պատից այն կողմ, դեպի լեռան հարթությունը երևում են խոր, հնաքրքրության արժանի ավերակներ, մի քաղաքի մնացորդներ, որ երկրի ժողովուրդը անվանում է Գառնի։ Այս հնավանդ ավերակները երկարում են մեծ տարածությամբ, ցուցադրելով երկար ու այլազան շարք տների հիմքերը և հինգ եկեղեցիների ավելի աչքառու ավերակները, որոնց կառուցման ոճը պատկանում է տարբեր շրջանի, քան բերդինը։ Այս սրբազան շենքերի ճարտարապետությունը ճիշտ նման է էջմիածնի վանքին, որից երևում է, թե ժայռի վրայի սյունազարդ շենքից մի դար հետո է կառուցվել։ Պաշտպանողական պարիսպները և աշտարակները, որոնք հավանական է, որ լինեն քաղաքի սահմանները, հազար յարդա են։ Անցյալ փառքի այս մնացորդների կամարների տակ ապաստան են գտել մոտ ինըտասը լիանական ու նստակյաց ընտանիք, որոնք իրենց և իրենց կենդանիների հարմարություն ստեղծելու համար, աղարաել են հին ճարտարապետության հոյակապ երևույթը»[5]։

Այս վկայության մեջ հիշատակվող հինգ եկեղեցիների մնացորդները պահպանվել են մինչև մեր օրերը։ Կարևոր է և այն, որ Կեր Պորտերի վկայությունից երևում է, թե Գառնին ամայի է եղել, բնակչությունից զուրկ և ժամանակավորապես միայն մի քանի քոչվոր ընտանիքներ են այնտեղ բնակված եղել։

1 Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Ձ. Երևան, 1934, էջ 347։
2 Նույն տեղում, էջ 805—807։
3 Նույն տեղում, էջ 808։
4 Նույն տեղում, էջ 809։
5 Նույն տեղում, էջ 809—810։

Դյուբուան (Dubois) այցելել է Գառնի 1834 թ. մարտի 20-ին։ Նա նշում է Գառնիի մեծամեծ ավերակները, հատկապես ուշադրություն է դարձրել հեթանոսական տաճարի փլատակների վրա՝ տալով նրա գլխավոր ճակատի վերակազմությունը[1]։

---

[1] Dubois de Monperreux. Voyage antour du Caucase cher les Tcherkesses et les Abkhases, en Colchide, en Georgie, en Armènie et en Crimée, vol. III, էջ 386—389։ Ալիշան, Այրարատ, էջ 362—36[illegible]։

## 2. ԳԱՌՆԻԻ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՊԵՂՈՒՄՆԵՐԸ

*Գառնիում բացի բերդի ամրակուռ պարսպից, հեթանոսական հոյակապ տաճարից, որոնք հայտնի էին վաղուց, և պեղումներով բացված հին հայկական հուշարձաններից (մոզայիկ հատակով բաղնիք, անտիկ ժամանակաշրջանի այլ շենքերի հետքեր և այլն), կան նաև միջնադարյան բազմաթիվ հուշարձանների ավերակներ, կամ նրանց մնացորդները[1]։*

*Վաղ ֆեոդալական ժամանակաշրջանին են պատկանում երկու եկեղեցի և մի գերեզմանոց հնատիպ տապանաքարերով։ Դրանցից հնագույնը Գառնիի բազիլիկ եկեղեցին է (տախտ. I), որը միանավ, բայց հարավից արտաքին սրահ ունեցող կառուցվածք է եղել[2]։ Դեռևս պարզված չէ, թե արտաքին սրահը քանի սյուն կամ մույթ է ունեցել, սակայն, արևելյան կողմում գտնվում է սրահի թաղակապ խորանը, որը մասամբ պահպանվել է։ Եկեղեցին այժմ խիստ ավերված է. համեմատաբար լավ են պահպանվել հյուսիսային, մասամբ և արևելյան պատերը, իսկ հարավային և արևմտյան պատերը կործանվել են։ Մասնակի պեղումներով կարելի կլինի ճշտել եկեղեցու հատակագիծը։ Այս բազիլիկ եկեղեցին Գառնիի հնագույն քրիստոնեական հուշարձանն է, որի ավերակները հասել են մեզ. այն կարելի է թվագրել IV—V դարերով։ Եկեղեցու շուրջը գտնվում են նաև միջնադարյան և նոր ժամանակների գերեզմաններ, իրենց տապանաքարերով։*

*Վաղ ֆեոդալական ժամանակաշրջանի հաջորդ հուշարձանը՝ պեղումներով հայտնաբերված բոլորաձև քառախորան, կենտրոնագմբեթ եկեղեցին է (նկ. 1), որը կառուցվել է VII դարում։ Եկեղեցու չորս խորանները կազմում են շրջանակի մեջ առնված խաչի չորս թևերը, որոնց միջև զետեղված են չորս փոքրիկ սենյակ-ավանդատներ[2]։ Եկեղեցին տեղադրված է Գառնիի հեթանոսական տաճարին կից՝ նրա արևմտյան կողմում։ Եկեղեցու պատուհանների պսակները քանդակազարդ են եղել (նկ. 1բ)։*

*VII դարի սբ. Սիոն անունով եկեղեցու վերաբերյալ վկայություն պահպանվել է 1346 թ. մի ձեռագրի հիշատակարանում, որտեղ ասված է. «Ի հայոց թուին ՃԼ շինեցաւ սուրբ Սիոն ի Կուրապաղատին ի վերայ Գառնոյ հողահա-*

---

1 *Գառնիի ճարտարապետական հուշարձանների ուսումնասիրությամբ պարապում է արշավախմբի ճարտարապետ Ա. Սահինյանը, սակայն միջնադարյան Գառնիի մասին որոշ գաղափար կազմելու համար անհրաժեշտ ենք համարել գեթ ժամանակագրական կարգով թվարկել այդ հուշարձանները։*

2 Материалы по археологии Кавказа *13-րդ հատորում բերված է այդ եկեղեցու հատակագիծը, որտեղ թյուրիմացաբար այն ցույց է տրված որպես երկնավ կառուցվածք (էջ 32)։*






Նկ. 1ա. Հատակագիծ քառախորան եկեղեցու (VII դ.)






Նկ. 1բ. Նույն եկեղեցու պատուհանի պսակ

*տին, տէր Ներսէսի հրամանաւ[1] (Հայոց ՃԼ 130—551=681 թվականին շինվեց սբ. Սիոնը Կուրապաղատի կողմից Գառնո հողահատի վրա տեր Ներսեսի հրամանով)։*

*Այս վկայությունը վերաբերում է արդյոք քառախորան եկեղեցուն, թե ոչ դժվար է ասել, սակայն, ժամանակով շատ է համապատասխանում նրան։*

*Գառնի ամրոցի դիմաց սուսքից շուրջ 300 մետր դեպի հյուսիս, մի փոքրիկ բարձունքի վրա գտնվում են գերեզմանի մնացորդները, որտեղ կանգնած է Կաարտնիդև Թաղուհու 879 թ. կրող խաչքարը (տախտ. II) և մի քանի այլ խաչքարեր, որոնց վրա փորագրված խաչերը իրենց ձևերով և արվեստով կարող են թվագրվել VIII—IX դարերով։ Դրանք փորագրված են ամրոցի առաջին դարի, բայց արաբների ձեռքով ավերված պարսպից տարված քարերի վրա։*

*Իր ժամանակին այս գերեզմանոցում է գտնվել նաև ամրոցի շինության վերաբերյալ Տրդատ թագավորի թողած արձանագրությունը կրող քարը, որը հանել տարել են պարսպի վրայից և վրան քանդակել VIII—IX դարերի համար բնորոշ խաչ։ Այս բլրի վրա ընկած է նաև ոմն Մխիթարի և Զարա տիկնոջ հիշատակին 1211 թ. կանգնեցված մի խաչքար։*

*Գառնիում ավելի բազմաթիվ են XII—XIV հետագա դարերի հուշարձանների մնացորդները։ Դրանցից առավել աչքի է ընկնում մի փոքրիկ կենտրոնագմբեթ եկեղեցի, կառուցված բազալտ քարից XII դարում[2] (տախտ. III)։ Ավանդաբար այդ եկեղեցին կոչվում է «Մաշտոց հայրապետ», 897 թ. վախճանված և Գառնիում թաղված Մաշտոց կաթողիկոսի անունով։ Սակայն շենքի և նրան կից հուշարձանների վրա փորագրված արձանագրություններից երևում է, որ այդ եկեղեցին կոչվել է Սուրբ Աստվածածին, իսկ XIV դարում նաև Սումպենց վանք, հավանաբար նրանից ոչ հեռու գտնվող եկեղեցիների հետ միասին։ Այս կենտրոնագմբեթ եկեղեցու բակում կան բարձր արվեստով քանդակված խաչքարեր, որոնցից մեկը կրում է 1200 տարեթիվը։ Եկեղեցու կողքին, համարյա նրան կից կառուցված է նաև մի մահարձան, որը առանձին կանգնած խորշի տեսք ունի՝ մեջը ագուցված խաչքար և ծածկված եռկթեռ սանիքով (տախտ. IV)։ Մահարձանի ճակատի հարթ մասի վրա փորագրված են կարևոր բովանդակություն ունեցող նվիրատվական և այլ արձանագրություններ։*

*Ամրոցի ներսում հեթանոսական տաճարի հյուսիս-արևմտյան անկյան դիմաց և քառախորան եկեղեցուն կից գտնվում է վերևում հիշատակված փոքրիկ մատուռը, մեջը Մաշտոց կաթողիկոսի տապանաքարը, որի վրա արձա-*

---

*1 ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, կազմեց Լ. Ս. Խաչիկյան, Երևան, 1950, էջ 352։ Այս վկայության մեջ եկեղեցու շինության թվականը ցույց է տրված 681 թ. և ասվում է, թե տեր Ներսեսի հրամանով է կառուցվել։ Հավանաբար ակնարկվում է Ներսես Տայեցին, որը մեռել է ցույց տրված թվականից շուրջ քսան տարի առաջ՝ 662 թ., ուստի ՃԼ թվականը ուղղելի է ՃԸ (659)։ Այս ուղղումով վերացվում է նաև մի անհամապատասխանություն. վկայության մեջ ասվում է «Շինեցաւ սուրբ Սիոն ի Կիւրապաղատին»։ Այս արտահայտությունը կարելի է հասկանալ, թե եկեղեցին շինվել է Կուրապաղատի կողմից կամ նրա ժամանակ (ուղղելով Կուրապաղատին բառը Կուրապաղատէն ձևով)։ 681 թ. Հայաստանում իշխում էր Գրիգոր Մամիկոնյանը, որը Կուրապաղատի տիտղոս չի ունեցել, մինչդեռ 659 թ. Հայաստանում իշխում էր Համազասպ Մամիկոնյանը, որը Կուրապաղատ տիտղոսը ստացել էր բյուզանդական Հուստինիանոս III կայսրից։*

*2 Այս եկեղեցու պատկերը հրապարակված է Ալիշանի կողմից. Տե՛ս Այրարատ, էջ 362։*

-նագրված. է «Ի ՅԽՁ (897) ԹՎ. ՔՍ. ՓԽՑ ՏԷՐ ՄԱՇՏ (346(=897) թվականին ի Քրիստոս փոխագրվեցավ (մեռավ) Տեր Մաշտոցը)»։ Մատուռի առջև կան հարթ տապանաքարեր, որոնցից մեկը արձանագրություն ունի։

Գյուղամիջում գանվող և այժմ կանգուն եռանավ բազիլիկ եկեղեցին, նույնպես կոչվում է սբ. Աստվածածին և կառուցված է ուշ միջնադարում հին եկեղեցու ավերակների վրա։ Այս եկեղեցու բակում կան մի քանի խաչքարեր և տապանաքարեր, իսկ հյուսիս-արևելյան անկյան դիմաց բարձր պատվանդանի վրա կանգնած մնում է Գառնիի ամենագեղեցիկ քանդակներով զարդարված, 1291 թվականի թվակիր կրող խաչքարը՝ հեղաքրքիր արձանագրությամբ։

Գյուղի հարավ-արևելյան ծայրում պահպանվում են միանավ բազիլիկ եկեղեցու և սրան կից, նույնպես բազիլիկ ձևի մատուռի ավերակներ։ Երկուսի ծածկերն էլ չեն պահպանվել։ Նրանցից քիչ հյուսիս գանվում են խորշաձև և երկթեք ծածկով մահարձանի ավերակները։ Դրանք բոլորն էլ XIII—XIV դարերի կառուցվածքներ են երևում։ Այս մահարձանի, բազիլիկ եկեղեցու և մատուռի շուրջը փռված է մի ընդարձակ գերեզմանոց, որտեղ հնագույն թաղումները պատկանում են XIII—XIV դարերին, իսկ հիմնականում դա ուշ միջնադարյան գերեզմանոց է, որի շարունակությունը կազմում է գյուղի այժմյան գերեզմանոցը։

Միջնադարյան մի ընդարձակ գերեզմանոց, փռվում է գյուղի հյուսիս-արևմայան կողմի բլուրների վրա։ Մեծ բլրի արևմտյան ծայրին մնացել են բոլորաձև, ոչ մեծ մատուռի կամ գմբեթաձև դամբարանի (տրամագիծը 4,85 մ) հիմքերը։ Դրանից քիչ արևելք պատվանդանի վրա կանգնած է պարոն Սարգսի 1195 թ. կրող խաչքարը (տախտ. V), ավելի արևելք ընկած է ոմն Ասիլի խոշոր խաչքարի վերին մասը։ Այս գերեզմանոցում գտնվում են XIII—XIV դարերի բազմաթիվ խաչքարեր և տապանաքարեր, որոնցից մի քանիսի վրա արձանագրություններ են փորագրված։ Խաչքարեր և տապանաքարեր գանվում են նաև այս մեծ բլուրից դեպի արևելք ընկնող ցածրադիր բլրի վրա։

Գյուղի հյուսիս-արևելյան ծայրում՝ բլրի վրա պահպանվում են սբ. Հեղինե մատուռի մնացորդները, իսկ նրա կողքին մի այլ շենքի, հավանաբար գմբեթավոր մատուռի մնացորդները։ Այս մատուռների շուրջը կա ոչ այնքան ընդարձակ մի գերեզմանոց՝ տապանաքարերով և խաչքարերով, որոնցից մեկի վրա կարդացվում է Գրիգոր որդի Ծատուրի, իսկ մատուռի մեջ, որը ավերվելուց հետո պրիմիտիվ ձևով շարված է անտաշ քարերից, գրված են խաչքարեր, որոնցից մեկի վրա փորագրված է «Ես Վարգս կանգնեցի»։

Գյուղի հյուսիս-արևելյան թաղում մի փոքրիկ բլրակի վրա, որտեղ տեղադրված է Օգերևութաբանական կայանը, կան միջնադարյան գերեզմաններ, իսկ բլրի հարավային ստորոտում պատահաբար բացվել է գինու մառան, մեջը հինգ կարաս։ Բլրից քիչ դեպի հյուսիս-արևմուտք պահպանվում են մի մատուռի մնացորդները, որի մեջ դրված են խաչքարեր։

Գյուղի հարավ-արևելյան թաղում պահպանվում են Թուխ-Մանուկ անունով մի մատուռի և Ջորավոր անունով մի շենքի մնացորդները։

Միջնադարյան գերեզմանոցներ կան նաև ամրոցի դիմաց՝ արևելյան ձորում և ամրոցից արևմուտք գտնվող բարձունքի վրա։

Ազատ գետի ձորում, ամրոցից քիչ դեպի արևմուտք, ուղղահայաց ժայռի ստորոտում գանվում է Աղջկաբերդ կոչվող քարայրը, որի հետ կապված է մի

ավանդություն, թե այդտեղ բանտարկված է եղել Տրդատ թագավորի աղջիկը կամ քույրը։ Այս ավանդության համար կարող էր հիմք ծառայել Ստեփանոս Օրբելյանի վկայությունը Գառնու ձորի քարայրում առանձնացած երաժիշտ և բանաստեղծուհի Սահակադուխտ կույսի մասին։ Այս քարայրը, որի միջից աղբյուր է բխում, հարմար է որպես դիտակետ ձորից եկող ճանապարհի վրա հսկելու, ինչպես նաև իբրև ապաստարան թշնամուց պաշտպանվելու համար։ Ընդարձակ քարայրի առջև, դեռևս հին ժամանակներում, պատ է կանգնեցվել, որի հետքերն են երևում տեղում, իսկ այժմ կանգուն մնում է քարով ու կրով կառուցված մի աշտարակաձև պատ պաշտպանության համար թողնված ակնատով։ Այս պատը կարող է կառուցված լինել ոչ շուտ քան XVI դարում, երբ սկսեց գործադրվել հրադենը։

Գառնիի միջնադարյան աչքի ընկնող հուշարձաններից է գյուղի արևելյան ծայրում Ազատ գետի վրա կառուցված հին կամուրջը, որը կամարակապ թռիչքով իրար հետ է կապում գետի երկու ժայռոտ ափերը (տախտ. VI)։ Կամուրջը պետք է, որ XI դարում կառուցված լինի, մանավանդ նրա վրայով է անցնում դեպի Հավուց Թառ և Ազատ գետի ձախ ափի դարավանդում ու ձորերում գտնվող հին բերդը և բնակավայրը տանող միակ ճանապարհը։ Հայտնի է, որ Հավուց Թառի վանքը հիմնվել է XI դարում և նրա շինության համար տուֆ քարը տարվել է այս ճանապարհով, քանի որ վանքի մերձակայքում տուֆ քար չկա։ Կամուրջը հետագայում ենթարկվել է վերանորոգման, պահպանելով, սակայն, իր նախկին ձևը։

Գառնի գյուղից 2 կիլոմետր հյուսիս-արևմուտք բլրի գագաթին գտնվում են սբ. Սարգիս մատուռի ավերակները, որոնց շուրջը երևում են մի քանի հին տների մնացորդներ։ Հավանաբար սա այն գյուղատեղին է, որը հայտնի է սուրբ Սարգիս անունով։ Բնակարանների ավերակներին կից կա նաև մի գերեզմանատուն վատ մշակված քարերով։ Դրանցից մեկը խաչքար է, որը կանգնեցրել է ոմն Մխիթար ՈՂԵ (1246) թվականին։ Բնակատեղին ևս կոչվել է սբ. Սարգիս, որը Գառնիի մերձակայքում հիշատակվում է Հավուց Թառին պատկանող գյուղերի թվում՝ Կոխգ (այժմ Գողթ) գյուղի հետ միասին՝ 1487 թ. վերևում հիշատակված կալվածագրում[1]։

Գյուղից 3 կմ դեպի հյուսիս կիկլոպյան բերդի մեջ գտնվող մեծ ժայռի վրա փորագրված են խաչեր, իսկ նրանից ավելի հեռու դեպի հյուսիս-արևմուտք, սարի ստորոտին խաչքար է կանգնեցված մի քարայրի առջև։

Գյուղի մեջ մի շարք տների պատերի և բակը շրջապատող ցանկապատերի մեջ ինչպես և գործող գերեզմանոցում հանդիպում են միջնադարյան շենքերին պատկանող ջատ քարեր՝ սյուների խարիսխներ, քիվերի և որմնասյուների բեկորներ և այլն։

Գառնի գյուղի տարբեր մասերում պահպանվող միջնադարյան հուշարձանների մնացորդները, բնակելի շենքերի, կարասների, մառանների, տեղ-տեղ երևացող հիմքերը գյուղի տերիտորիայում թափթփված միջնադարյան խեցեղենի, ապակեղենի բեկորները, այստեղ, այնտեղ պատահաբար գտնվող առանձին դրամներն ու դրամական գանձերը և այլ հնագիտական իրերն ու առարկաները մի կողմից թույլ են տալիս պարզելու միջնադարյան Գառնի գյուղաքաղաքի սահմանները, մյուս կողմից օգնում են որոշ պատկերացում

1 Սիմեոն Երևանցի, Ջամբռ, էջ 277։

ունենալու միջնադարյան այդ գյուղաքաղաքի վերաբերյալ։ Պարզ երևում է, որ գյուղաքաղաքը բռնել է մի տարածություն, որի սահմանները կազմել են արևելքից՝ գյուղի հյուսիս-արևելյան ծայրին գտնվող հորդառատ աղբյուրները և նրանց փորած ձորը, որը միանում է Ազատ գետի ձորին, արևմուտքից՝ ամրոցի դիմաց ընկնող հարթությունը, հարավից՝ գյուղաքաղաքը եզերվել է Ազատ գետի ձորով, իսկ հյուսիսից՝ այստեղ գտնվող բլրաշարքով և հեղեղատի հունով։ Եթե նկատի ունենանք, որ միջին դարերում տները դասավորված էին լինում չափազանց խիտ, իսկ փողոցներն էլ շատ նեղ էին, ապա պարզ կլինի, որ Գառնի գյուղաքաղաքի բռնած տարածության վրա կարող էր բնակվել շուրջ 4—5 հազար մարդ, որը ավելի կլիներ գյուղի բնակիչների այժմյան թվից 1—2 հազարով։

Ամրոցում կատարված պեղումների ընթացքում արշավախումբը հայտնաբերել է միջնադարյան բնակելի և անտեսական նշանակություն ունեցող բազմաթիվ շենքերի մնացորդներ։ Այդ շենքերից մեկը բաղկացած է երկու ոչ մեծ դահլիճից և այլ կից սենյակներից։ Դահլիճի ծածկը հենվել է սյուների վրա, որոնցից պահպանվել են առանձին սյուների խարիսխները։ Իբրև խարիսխ, օգտագործվել են բազալտե վեցանկյունանի բեկորներ, որոնք ստացվում են բնության խաղով, առանց լրացուցիչ մշակման։ Նման քարեր շատ կան Ազատ գետի ձորում, մանավանդ վերը նկարագրված կամուրջի դիմաց գտնվող մեծ քարայրում։ Դահլիճներից մեկն ունի աղյուսաշար խորշ (տախտ. VII)։ Մնացած բնակարանները փոքր չափերի են (տես չափագրությունների տախտակը)։

Այս միջնադարյան շենքերի մնացորդների ուսումնասիրությունը թողնելով ճարտարապետ մասնագետներին, պիտի բավականանանք նշելով միայն երկու հանգամանք։ Միջնադարյան շերտերում բացված շենքերը բացի քառախորան եկեղեցուց, պատկանում են հիմնականում երկու ժամանակաշրջանի՝ XII—XIV դարերին և XV—XVII դարերին։ Դրանց հիմքերը դրված են կուլտուրական շերտերի լիցքի մեջ, սակայն, տարբեր մակարդակների վրա։ Քիչ չեն այնպիսի դեպքերը, երբ XV—XVII դարերի շենքերի հիմքերի տակ գտնվում են XII—XIV դարերի թոնիրներ, կարասներ, պատեր, բազմաթիվ իրեր ու առարկաներ, մանավանդ շերտերը լավ թվագրող շնարակած խեցեղեն և դրամներ։

Շինարարական տեխնիկայով երկու շերտի շենքերն էլ հար և նման են իրար՝ կառուցված են ճեղքված անտաշ քարերից, կավե շաղախով և պատած են եղել նույնպես կավե սվաղով։ Սակայն ամրոցի տարբեր մասերում XIII դարի վերամինյան տիպի մի խաչաձև շքաղյուսի և XIV—XV դարերի ութնանկյուն աստղաձև ու այլ ձևի շքաղյուսների բեկորների գյուտը ցույց է տալիս, թե ամրոցում եղել են նաև շքաղյուսներով զարդարված շենքեր։

Մինչև այժմ պեղված է ամրոցի մի փոքր մասը և դժվար է ասել, թե հայտնաբերված շքաղյուսները, որոնք գտնվել են տարբեր կետերում, լիցքի հողի մեջ, պատկանում են այն շենքերին, որոնց մնացորդները բացվել են, թե այլ կառուցվածքների, որոնց մնացորդները կբացվեն ապագայում։

Գառնիի միջնադարյան շենքերի համար բնորոշ է բազմաթիվ թոնիրների և կարասների առկայությունը։

Արդեն կատարված պեղումներով պարզված է, որ միջին դարերում, մանավանդ XIV—XVII դարերում Գառնի ամրոցը շատ խիտ կերպով բնակեց-



ՀԱՏԱԿԱԳԻԾ
ԳԱՌՆԻՈՒՄ ՊԵՂՎԱԾ
ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ՇԵՆՔԵՐԻ
Մասշտաբ 1:200
12-14 դդ. ՇԵՆՔԵՐԻ ՀԱՏԱԿԱԳԾԵՐԸ
15-17 դդ. ՇԵՆՔԵՐԻ ՀԱՏԱԿԱԳԾԵՐԸ
ԱՆՏԻԿ ՇՐՋԱՆԻ ՊԱՐԻՍՊԸ

ված է եղել, տները կպած են եղել իրար, փողոցներ դեռես չեն բացվել, և թե չհաշվենք խիստ նեղ նրբանցքների հետքերը։ Շենքերի շատ խիտ դասավորությունը բնորոշ է միջնադարյան բոլոր բնակավայրերին, սակայն, Գառնի ամրոցի տերիտորիայում բնակարանների առավել խիտ դասավորությունը բացատրվում է և այն հանգամանքով, որ XV—XVII դարերի աշտական արշավանքների ու ասպատակությունների ժամանակաշրջանում Գառնի ավանի բնակչության մի մասը տեղափոխվել էր ամրոցի ներսը, այդ ասպատակություններից պատսպարվելու նպատակով։

XVI—XVII դարերում ամրոցի պարիսպը մասամբ քանդված-ավերված էր, բայց դեռես չէր կորցրել իր պաշտպանական նշանակությունը, իսկ ամրոցի հրվանդանը արևելքից և մանավանդ հարավից պաշտպանված էր խորախոր ձորերով։

Ամրոցում եղել են նաև տնտեսական նշանակություն ունեցող շենքեր՝ մառաններ, գինու հնձաններ, գետնի մեջ փորված և գաճով լավ սվաղած գինու հորեր, որոնք ցույց են տալիս, թե Գառնին այգեգործության և գինեգործության աչքի ընկնող կենտրոն է եղել։

Ամրոցի ամենավերին շերտի (XV—XVII դդ.) բնակելի շենքերի պեղումների ժամանակ կարելի էր նկատել նրանց հանկարծակի ավերված և կողոպտված լինելը, որ երևում է մի քանի բնակարաններում կարասների մեջ պահպանված ալյուրի փոքրաքանակ պաշարների մնացորդների առկայությունից։ Դրանով հաստատվում են աղբյուրների տեղեկություններն այն մասին, որ 1638 թ. Գառնին ավերվել է թուրքերի ձեռքով և ամայացել։

XV—XVII դարերի շերտի պեղումները միաժամանակ ցույց են տալիս, թե Գառնիի բնակիչները մեծ մասը քարշ էր տալիս ծայր աստիճան աղքատիկ կյանք։

Ամրոցի հյուսիս-արևելյան մասում պարսպից քիչ ներս բացվել է սալահատակ, որը եզերող պատերի հետքերը հազիվ են նկատվում։ Սալահատակի համար օգտագործվել են տապանաքարեր և ավերված շենքերից վերցված շինաքարեր։ Ինչպես երևում է, այստեղ, XVI դարում աղոթատուն կամ մատուռ է կանգնեցված եղել, քանի որ նման սալահատակները բնորոշ են այդ տիպի շենքերին։

Գառնի ամրոցում կատարված պեղումների ժամանակ, բացի բնակելի և տնտեսական շենքերի մնացորդներից, հայտնաբերվել են մեծ քանակությամբ միջնադարյան խեցեղենի, ապակեղենի բեկորներ, մետաղե երերի և առարկաների մնացորդներ, քարե սանդեր, աղորիքներ և այլ հնագիտական նյութեր։

Ամենից ավելի առատ են հասարակ և ջնարակած խեցեղեն իրերը և նրանց բեկորները, քանի որ կավե անոթները վերին աստիճանի լայն կիրառություն ունեին բնակչության կենցաղում, իսկ նրանց մնացորդները լավ են պահպանվում հողաշերտերի տակ։ Գառնիի պեղումներով հայտնաբերված խեցեղենի ուսումնասիրությամբ զբաղվում է արշավախմբի աշխատակից, պատմական գիտությունների թեկնածու Գրիգոր Կարախանյանը, որի համառոտ աշխատությունը հրապարակվում է ներկա պրակում։ Գառնիում պեղումների ժամանակ և պատահականորեն, գտնվել են զգալի թվով դրամական գանձեր և առանձին դրամներ, որոնց ուսումնասիրությունը ձեռնարկել է Հայաստանի Պետական պատմական թանգարանի աշխատակից, դրամագետ

Խ. Մուշեղյանը։ Միջին դարերին վերաբերող մնացած հնագիտական նյութերը ամփոփված են ներկա պրակում։

Գառնին պատկանում է այնպիսի հնավայրերի թվին, որտեղ կյանքը շարունակարար գոյություն է ունեցել հնագույն ժամանակներից սկսած մինչև մեր օրերը, չհաշված շուրջ 200-ամյա ընհատումը՝ XVII—XVIII դարերում։ Նման հնավայրի պեղումների ժամանակ երևան են գալիս տարրեր դարաշրջանների իրար հաջորդած մշակույթի հետքերը։ Այդ հանգամանքը թույլ է տալիս գաղափար կազմելու տարրեր դարաշրջանների մշակութների և նրանց առանձնահատկությունների մասին, առավել կամ նվազ հստակությամբ պարզելու տարրեր մշակութների շերտագրությունը, դրանց թվադրությունը և հաջորդական փոխանցումները, իսկ դա մեծ կարևորություն է ներկայացնում Հայաստանում հայտնաբերվող հնագիտական առարկաների և նյութերի բնույթը և ժամանակը պարզելու տեսակետից։

Ինչ վերաբերում է Գառնիի միջնադարյան շերտերին, ապա պետք է ասել, որ հայտնաբերված է երեք կուլտուրական շերտ՝ վաղ ֆեոդալական, զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի (IX—XIV դարեր) և ուշ ֆեոդալական՝ կամ XV—XVII դարերի շերտերը, այդ դարաշրջաններին պատկանող շենքերի, քարե, կավե, մետաղե և այլ նյութերից պատրաստված իրերի և առարկաների մնացորդներով։

Գառնիի IX—XIV դարերի կուլտուրական շերտում հայտնաբերված հնագիտական նյութերը, թեև չեն կարող մրցել Դվինի և Անիի նույն ժամանակաշրջանի շերտերից հայտնաբերված հնագիտական խիստ առատ ու բազմակողմանի իրերի հետ, ոչ իրենց քանակով և ոչ էլ արվեստով ու որակով, սակայն, կարևոր են գյուղաքաղաքի կամ փոքր քաղաքի բնակչության նյութական արտադրության ու կենցաղի ուսումնասիրության համար, ինչպես և ամրոցի ու գյուղաքաղաքի կապը մեծ քաղաքների հետ պարզելու տեսակետից։ Ինչ վերաբերում է Գառնիի ուշ ֆեոդալական ժամանակաշրջանների կուլտուրական շերտերում հայտնաբերված հնագիտական նյութերին, ապա դրանց նշանակությունը բավականաչափ մեծ է այն պատճառով, որ Անին այդ դարաշրջաններին վերաբերող նյութեր չափազանց քիչ է տվել, իսկ XVI—XVII դարերի նյութեր գրեթե չի տվել։ Իսկ Դվինում կյանքը ընդհատվել է XIII դարում, ուստի այս քաղաքի պեղումները նյութեր չեն տալիս ուշ միջնադարի վերաբերյալ։

## 3. ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳԻՆԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՌՆԻՈՒՄ

*Դառնիի պեղումների ընթացքում հայտնաբերվել են զգալի չափով այնպիսի նյութեր, որոնք կապված են այգեգործության և գինեգործության հետ։ Այս նյութերը արձանագրական և մատենագրական որոշ տվյալների հետ միասին թույլ են տալիս բնութագրելու այգեգործության և գինեգործության կարևոր տեղն ու դերը բնակչության զբաղմունքի և տնտեսության մեջ։*

*Հայտնի է, որ այգեգործությունը Հայկական լեռնաշխարհի շատ հովիտների և դարավանդների բնակչության կարևոր և շահութաբեր զբաղմունքների թվում եկրին տեղը չի զրկվել՝ սկսած հին ժամանակներից մինչև մեր օրերը։ Այդ է պատճառը, որ այգեգործության և նրա հետ կապված գինեգործության վերաբերյալ բազմաթիվ արժեքավոր տվյալներ են ցրված հայերեն մատենագրության մեջ սկսած V դարից մինչև ուշ միջնադարը, ինչպես և հայերեն վիմական արձանագրություններում։*

*Այգեգործությամբ պարապում էին ոչ միայն գյուղերում, այլև քաղաքներում և նրանց մերձակա ագարակներում։ Խաղողի որթի մշակման համար բարենպաստ պայմաններ ունեցող քաղաքները շրջապատված էին խաղողի այգիներով։ Ագաթանգեղոսի ասելով Վաղարշապատ քաղաքի հյուսիս-արևելյան կողմում III դարի վերջերին փռված էր այգեստանը, որտեղ շենքերի ներքնահարկերում եղել են խաղող ճզմելու բաժանմունքներ՝ «շինությունների հնձաններ» կամ «հնձանահարկեր»։*

*Ագաթանգեղոսը պատմելով Գայանե, Հռիփսիմե և մյուս կույսերի՝ Արևմտյան հռոմեական կայսրության սահմաններից Հայաստան գալու մասին շարունակում է. «Յայնմ ժամանակի գային հասանէին յերկիրն Հայոց, յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, զոր և Նորաքաղաքն կոչեն, ի նիստս թագաւորացն Հայոց։ Այնուհետև եկեալ մտանէին ի հնձանայարկս այգեստանւոյն, որ կան շինեալ ի հիւսիսոյ յարևելից կուսէ»[1]։ («Այն ժամանակ գալիս հասնում են հայոց երկիրը, Այրարատ գավառը, Վաղարշապատ քաղաքը, որը Նորաքաղաք են անվանում, հայոց թագավորների նստավայրը։ Այնուհետև գալիս մտնում են այգեստանի հնձանահարկերը, որ շինված են (քաղաքի) հյուսիս արևելյան կողմում»)։ Դեռևս քրիստոնեություն չընդունած Տրդատ Գ թագավորի կարգադրությամբ փնտրում են կույսերին և գտնում Վաղարշապատ քաղաքում «ի հնձանս շինուածոցն»[2]։*

*Ագաթանգեղոսի այս վկայությունների մեջ «հնձանյարկի» և «հնձան շինուածոցն» միևնույն իմաստն ունեն և նշանակում են, թե Վաղարշապատ քա-*

1 Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1902, էջ 85։

2 Նույն տեղում, էջ 90։

ղաքի հյուսիս-արևելյան կողմում գտնվում է խաղողի այգիներով հարուստ Այգեստանը, որտեղ եղած շինվածքների ներքնահարկերում դետեղված էին հնձանները. «Հնձանայարկ» և «Հնձանս շինուածոցն» արտահայտությունները այլ կերպ հասկանալ չի կարելի։ Հնձանահարկ ունեցող այս շինվածքները քաղաքի հյուսիս-արևելյան ծայրին գտնվելով՝ քաղաքից դուրս չէին, քանի որ նույն հեղինակի ասելով «սուրբ վկայքն այնոքիկ եկեալ ղօղեալ էին յարքայական կայանին, ի նորին թագաւորանանին ի Վաղարշապատ քաղաքի»[1]։

Պիտի ասել որ, հին (անտիկ) ժամանակներում, ինչպես և միջին դարերում, բնակելի, նույնիսկ պալատական շենքերի ներքնահարկերում տնտեսական բաժանմունքների տեղադրված լինելը սովորական և բնական երևույթ է եղել և, ինչպես տեսնում ենք, նման տնտեսական բաժանմունքների թվին պատկանել են նաև հնձանները։ Դրա լավագույն ապացույցը 1957 թ. երևան եկավ նաև Գառնի ամրոցում կատարվող պեղումների շնորհիվ։

Ամրոցի խորքում, հուշակավոր հեթանոսական տաճարից ոչ հեռու, պեղումներով հայտնաբերված մոզայիկ հատակով բաղնիքին դրեթե կից, հայտնաբերվել են պալատական կառույցների խմբի մեջ մտնող մի նշանավոր շենքի մնացորդներ, որոնք թեև շատ վատ են պահպանված, սակայն, երևում է, որ պալատական բնակելի շենքի են պատկանել։ Այդ շենքը եղել է երկհարկանի և պահպանվել են միայն նկուղային հարկի պատերի ստորին շարքերը։ Այս կառուցվածքը իր շինարարական տեխնիկայի առանձնահատկությամբ ժամանակակից է մոզայիկ հատակ ունեցող բաղնիքին, որը մոզայիկ պատկերներով և հնագիտական նյութերով հաստատապես թվագրվում է III դարի վերջերով։ Նորահայտ շենքն ունեցել է հետաքրքիր ներքին բաժանումներ, որոնցից մեկը ծառայել է իբրև հնձան։ Դա մի փոքրի սենյակ է 2×2,5 մ չափերի, որի հատակը կազմված է կրաշաղախի լիցքից, ողորկ և ոչ ջրաթափանց մակերեսով, պատերը նույնպես ծածկված են եղել սվաղով, որի հետքերը նկատելի են։ Հնձանը հարևան սենյակից անջատված է եղել մի ցածրադիր (մոտ 70 սմ բարձրության) պատով, որպեսզի կարելի լիներ խաղողը լցնել այդտեղ և ճզմել։ Քաղցուն փոքր ինչ թեք մակարդակ ունեցող հատակից հոսելով՝ ցածրադիր պատի տակ անցկացրած կավե փողրակով ծորում էր դեպի հարևան սենյակը և հավաքվում նրա շատ ավելի ցածրադիր հատակին դրված անոթի մեջ։ Այս երկրորդ սենյակը ինչպես և մյուս սենյակները շատ ավելի ընդարձակ են և կարող էին ծառայել իբրև մառան։

Թե ինչով է ճզմվել խաղողը, դժվար է ասել, քանի որ մեր հնձանի կառուցվածքը թույլ չի տալիս այդ աշխատանքը կատարել ամենապարզ եղանակով՝ ոտքերով խաղողը տրորելով, ինչպես և քարե ճզմիչի միջոցով։

Գառնիի բնակելի պալատական շենքի ներքնահարկում խաղող ճզմելու հնձանի առկայությունը ասես կենդանի պատկերը լինի Ագաթանգեղոսի հիշատակած հնձանահարկերի։ Միաժամանակ Գառնիում հայտնաբերված հնձանը Հայաստանում հայտնի դարձած հնձաններից հնագույնն է (III դ.), ուստի կարևոր նշանակություն ունի այս տիպի տնտեսական կառուցվածքները պատկերացնելու և ուսումնասիրելու տեսակետից։

---

[1] Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1902, էջ 88։

Մի խումբ շատ նշանավոր հնձանների մնացորդները բացվել են Ջվարթնոցում։ Այդ հնձանները մի մեծ շենքում տեղադրված միասնական խումբ են կազմում և սպասարկել են վանական խոշոր տնտեսության կարիքները։

Դվինում բացվել են նաև միջնադարյան այլ տիպի հնձաններ, որոնք պատկանել են առանձին տնտեսատերերի։ Առայժմ պեղված է ամրոցի մի փոքր մասը միայն, բայց արդեն հայտնաբերվել են տաս հնձանի մնացորդներ, չհաշված անտիկ շրջանի շենքի հնձանահարկը։ Այս միջնադարյան հնձանները սովորաբար ունենում են նաև քաղցուն հավաքելու և գինին պահելու հորեր, բոլորովին նոր տիպի, իսկ մի հնձանի կից պահպանվում էին կարասներով մառանի հետքերը։




Նկ. 2. Հատակագիծ երեք բաժանմունքով հնձանի

Այս վերջին հնձանը, որը բացվել է 1952 թ., բաղկացած է երեք բաժանմունքից։ Առաջինը բուն հնձանն է կրով սվաղված պատերով ու հատակով, որն ունի թեք մակարդակ և մի փոսիկ, որտեղ հավաքվում էր քաղցուի տիղմը։ Ճզմվող խաղողի քաղցուն հատակի թեք մակարդակով հոսում էր դեպի սենյակի հյուսիս-արևմտյան անկյունը և այստեղից միջնորմի մեջ բացված անցքով թափվում երկրորդ բաժնի մեջ։ Վերջինս մի փոքրիկ սենյակ է, շատ ավելի ցածրադիր հատակով, որի վրա դրված անոթի մեջ թափվում էր առաջին բաժանմունքից պատի մեջ դրված խողովակով հոսող քաղցուն։ Այս երկրորդ բաժանմունքում, որը միացած է առաջինի հետ ցածրադիր պատով, հավանաբար կարասների մեջ լցվելով պահվում էին և այն մնացորդները (չանչ), որոնք առաջանում էին խաղողը ճզմելու և քաղցուն անջատելու շնորհիվ։ Երրորդ բաժանմունքում դասավորված էին 5 խոշոր կարասներ և մի կիսակարաս (տախտ. VIII), պատրաստի գինին, հավանաբար նաև օղին պահելու համար։ Ուրեմն հնձանի երրորդ բաժանմունքը մառանն էր հանդիսանում (նկ. 2)։

Դվինի և այլ վայրերի հնձանների առավել բնորոշ տիպը, սակայն, հատակի տակ փորված մեծ հորերով հնձանն է։ Նման հնձաններից մեկը բացվել է 1950 թ. ամրոցի կենտրոնական մասում։ Դա բաղկացած է երկու սենյակից կամ բաժանմունքից։ Առաջին բաժանմունքը ծառայել է իբրև բուն

հնձան, Նրա հատակը սվաղված է կրաշաղախի հաստ շերտով և ունի թեք մակարդակ, որպեսզի խաղողը ճզմելիս քաղցուն հոսի դեպի հատակի ցածրադիր մասում փորված մեծ հորի մեջ, որը նույնպես սվաղված է կրի շերտով։ Նույնպիսի սվաղ ունեցել են նաև առաջին սենյակի պատերը։ Առաջին սենյակից դուռը տանում է դեպի երկրորդը, որը ծառայել է իբրև մառան։ Նրա հյուսիս-արևելյան անկյան մոտ հաաակի տակ ևս փորված է մի մեծ հոր, որի մեջ քաղցուն հավաքվում էր առաջին սենյակից կամ բուն հնձանից հոսելով միջնորմի տակից թողնված կիսախողովակաձև անցքով։ Հորի խորությունը 1,9 մ, տրամագիծը լայն մասում 1,4 մ, հատակի մոտ՝ 1.36 մ, բերանի բացվածքի արամագիծը՝ 0,56 մ. Հորի տարողությունն է մոտ 2200 լիտր։ Նույնպիսի տարողություն է ունեցել և առաջին մասի հորը, որը սակայն կիսով չափ ավերված է։ Երկրորդ կամ իբրև մառան ծառայող սենյակի հատակի տակ, սենյակի հյուսիս-արևմտյան և հարավ-արևմտյան անկյունների մոտ փորված են ևս երկու մեծ հորեր, իսկ հարավ-արևելյան անկյան մոտ միջնորմին կից հատակի տակ հորված է մի կարաս։ Այսպիսով, այս բաժանմունքի




Նկ. 3. Հատակագիծ երկու բաժանմունքով և հորերով հնձանի

մառան լինելը կասկածի տեղիք չի տալիս (նկ. 3)։ Հորերը շարված են անտաշ քարերից, բայց լավ սվաղված են հաստ կրաշաղախով, նրանք ունեն կարասի ձև, սակայն շատ լայն հատակ, դեպի վեր նեղանալով ավարտվում են բոլորակ բերանով, շատ ավելի խոշոր են, քան կարասները։ Հորերի պատերին երկու տեղով տարբեր բարձրությամբ դուրս են ցցված շարվածքի քարերի ծայրերը, որով ոտքի հենարան է ստեղծվել հորի մեջ իջնելու և դուրս գալու համար։

Հորերի բերանները և շուրթերը նույնպես լավ են սվաղված հասա կրաշերտով և ծածկված բազալտից կամ տուֆ քարից շինված բոլորաձև, կենտրոնում լայն անցք ունեցող սալերով։ Անցքը, որը փակվում էր տուֆ կամ բազալտ քարից շինած լայն գլխիկ ունեցող խցանաձև կափարիչով (տախտ. IX), խմորման ժամանակ բացվում էր, որպեսզի գազերը դուրս գան, իսկ խմորումից հետո փակվում։ Անցքը ծառայում էր նաև հորից փոքր քանակությամբ գինի հանելու նպատակին։ Գինին ամբողջությամբ դատարկելու կամ հորը մաքրելու համար վերցվում էր հորի բերանի սալը։

Երկու բաժանմունքով և յուրաքանչյուր բաժանմունքում մեկական հոր ունեցող երկու հնձան էլ բացվել են ամրոցի պարսպապատի տակ՝ ներսից, այնպես, որ հորերը կպել են պատին՝ մեկը արևելյան պարսպապատի երկրորդ աշտարակի մոտ[1], համարյա պատի գլխին, որովհետև պատը կիսով չափ ավերված էր, իսկ մյուս հնձանը գտնվում էր հյուսիսային կողմի հինգերորդ աշտարակի ետևում՝ ներսից։ Արևելյան երկրորդ աշտարակին կից հնձանի հորերից յուրաքանչյուրն ունի 2,1 մ խորություն, 1,72 մ արամագծով՝ լայն մասում 1,66 մ, հատակի մոտ՝ 0,86 մ շուրթից 40 սմ ցած և 0,60 մ բերանի բացվածք։ Հորի տարողությունը կազմում է մոտ 3100—3200 լիտր։ Հյուսիսային հինգերորդ աշտարակին կից հնձանի հորերից յուրաքանչյուրն ունի 2,1 մ խորություն, 1,25—1,35 մ տրամագծով՝ լայն մասում, և 0,45 մ կազմում է հորի բերանի բացվածքի տրամագիծը։ Հորերն ունեն մոտ 2000 լիտր տարողություն։

Երկու հնձան դեռևս լրիվ չեն պեղված և նրանցից յուրաքանչյուրի մեջ բացված է մեկական հոր, ըստ որում, եթե զույգ բաժանմունքներով և զույգ հորերով հնձանները պատկանում են ամրոցի կյանքի առավել ուշ շրջանին, այն է՝ XIV—XVI դարերին, ապա դեռևս լրիվ չպեղված հնձանները հայտնաբերված են ավելի խորը շերտերում. նրանք տեղադրված են X—XIII դարերի շերտում և նրանց վերին մակարդակը 50—60 սմ ավելի խոր է գտնվում մյուս հնձանների մակարդակից։ Հնարավոր է, որ այս հնձանները զույգ բաժանմունք և զույգ հորեր չունենան։

Զույգ հոր ունեցող հնձաններում հորերը թեև կառուցվածքով և չափերով իրար նման են, բայց ունեն նաև մի էական տարբերություն՝ եթե երկրորդ բաժանմունքի հորն ունի հարթ հատակ, ապա առաջին բաժանմունքի, այսինքն բուն հնձանի հորի հատակի կենտրոնում փորված է լինում կիսաշրջանի կամ $1/3$ շրջանի տեսք ունեցող փոս, որպեսզի այստեղ հավաքվեր քաղցուի տիղմը։ Այս հանգամանքը թույլ է տալիս ենթադրելու, թե քաղցուն հավաքվում էր առաջին բաժանմունքի հորի մեջ նստվածք տալուց հետո դեռևս չխմորված, բայց արդեն մաքրված, վճիտ վիճակում փոխադրվում էր մյուս հորի և կարասների մեջ, որտեղ խմորվելով գինի էր դառնում։

Զույգ հորերով կառուցվածքների առկայությունը արևելյան 2-րդ և հյուսիսային 5-րդ աշտարակների մոտ կարող էր առաջացնել այն միտքը, թե հորերը ծառայել են իբրև ջրամբարներ ամրոցի պաշարման ժամանակ, սակայն, հնձանների որոշակի մնացորդների առկայությունը այդ կնաերում, ինչպես և

---

1 Աշտարակները համարակալվում են հաջորդաբար՝ հաշվելով մուտքից դեպի արևելք և դեպի արևմուտք, մուտքը պաշտպանում են արևելյան առաջին և հյուսիսային առաջին աշտարակները։

ավելի լավ պահպանված հորերով հնձանների հայտնաբերումը Գառնի ամրոցի տարբեր մասերում և պարիսպ չունեցող այլ բնակավայրերում ու վանքերի բակերում տարակուսանք չեն թողնում, որ ամրոցի հիշյալ երկու աշտարակների մոտ ևս եղել են հնձաններ։ Բացի գրանից, այդ երկու հնձանները կառուցվել են ավելի ուշ ժամանակներում (XV—XVI դդ.), երբ ամրոցը ավերված էր և կորցրել էր իր դերը, ուստի և հնձանները իրենց մի մասով տեղավորված էին պարսպապատի վրա։ Պարիսպը ներսից բաց անելու նպատակով անհրաժեշտ եղավ այդ հնձանների պարսպապատի վրա եառուցված հորերը քանդել, որով հնարավոր դարձավ ուսումնասիրել նրանց կառուցվածքը։ Նրանք շարված են անտաշ որձաքարից լցված կրաշաղախով և ներսից սվաղած գաճի տեսք ունեցող կրաշաղախի հաստ շերտով (տախտ. X)։ Նման հորերը կարող էին քաղցուն կամ գինին ծծել իրենց պատերի մեջ, սակայն, հին ժամանակներից ի վեր հայտնի է եղել կարասները և հորերը ներսից ձյութով կամ անասունի ճարպով պատելու եղանակը, որի շնորհիվ փակվում էին կարասների կամ հորերի ներքին մակերեսի անցքերը և նրանք հեղուկ համարյա չէին ծծում։ Հորերով հնձանների, ինչպես և կարասներով մառանների բազմաթիվ մնացորդներ հայտնաբերվել են նաև Գառնի ամրոցից դուրս գյուղի տարբեր թաղամասերում։

Գյուղի կենտրոնական հրապարակում լավ նկատելի են գետնի մեջ թաղված մի քանի կարասի մնացորդներ, իսկ հյուսիս-արևելյան թաղում 1958 թ. բացվեց մի մառան հինգ խոշոր կարասով (տախտ. XI)։

Ի տարբերություն Զվարթնոցի հնձանների, որոնք բոլորը դասավորված են իրար կից՝ միևնույն շենքում և պատկանել են խոշոր տնտեսություն ունեցող վանքին ու սպասարկել նրա պահանջները, Գառնիի հնձանները կառուցված են իրարից անջատ, առանձին բնակիչների բնակարանային կոմպլեքսների մեջ և սպասարկել են նրանց ոչ խոշոր անտեսության պահանջները։

Հատակի տակ հոր ունեցող հնձանները միայն Գառնիին հատուկ չեն։ Նրանք լայն տարածում են ունեցել միջնադարյան Հայաստանում և կառուցվել են քաղաքներում, գյուղաքաղաքներում, վանքերում և այլուր։ Նման հնձաններ ու հորեր մեզ հայտնի են Երևանում, Հավուց-թառում, Երվանդաշատի տերիտորիայում գտնվող միջնադարյան մի եկեղեցու բակում, Քանաքեռում, Արուճում (Թալիշ), Ջրվեժում, Սաղմոսավանքում և այլ վայրերում։

Գինի պահելու հորերի սովորական լինելը միջին դարերում իր արտահայտությունը գտել է ժամանակի գրականության մեջ։ Հովհաննես Դրասխանակերտցին խոսելով այն մասին, որ առաջին Բագրատունիների ժամանակ արարական ծանր լծից ազատված Հայաստանը շենանում և բարգավաճում էր, գրում է «Իսկ աշխարհիս Հայաստանեայց յաւուրսն յայնոսիկ այց արարեալ Տեառն, և պատսպարեալ և յաջողեալ ի բոլոր բարութիւնս, բնակեցան իւրաքանչիւր ոք ի ժառանգութիւնս իւրեաց. և սեփհականեալ զերկիր՝ տնկեցին այգիս և արմատացուցին բուրաստանս ձիթենեաց և պարտիզաց. հերկեցին հերկս արտաքոյ փշոց և կթեցին պտուղս հարիւրաւորս. զեղան շտեմարանք ցորենոյ ի ժամանակի լրութեան հնձոց. լցան գուբք գինւոյ ի կութս այգեստանեայց. և լերինք զցնծութիւն զգեցան, զի բազմացն ի նմա արօտականք անգեայք արջառոց և հօտք ոչխարացն»[1]։

---

[1] Պատմութիւն Յովհաննու կաթողիկոսի արարեալ, Երուսաղեմ, 1867, էջ 250—251։



Նկ. 4. Գինու հորեր և նրանց քարե կափարիչներ (չափագրություն)

(«Իսկ Հայաստան երկիրն նրանց օրոք այցելել էր Տերը և պաշտպանված ու հաջողված բոլոր բարիքների մեջ, բնակվեցին ամեն մեկը իրենց ժառանգության մեջ, և սեփականացնելով երկիրը՝ տնկեցին այգիներ և աճեցրին ձիթենիների ու պարտեզների բուրաստաններ. հերկեցին երկիրը ազատելով փշերից և հարյուրապատիկ բերք հավաքեցին. և լցվեցին շտեմարանները հունձն ավարտելու ժամանակ, լցվեցին գինու հորերը այգեկութին և լեռները ցնծություն հագան, որովհետև բազմացան նրանց վրա արածացող անասունների նախիրները և ոչխարների հոտերը»)։

Ստեփանոս Օրբելյանը պատմելով Սյունիքում, մասնավորապես Եղեգիս իշխանանիստ դաստակերտում Սաջյան Յուսուֆ ամիրայի գործած ավերածությունների մասին ասում է, թե, երբ Սյունյաց Սմբատ իշխանը և իր մերձավորները վերադարձան իրենց տերությունները, ապա «տեսանէին նոքա քակեալ զարքունական ապարանսն իւրեանց, աւերեալ զեկեղեցիս և անբնակ անապատացեալ զմեծամեծ աւանսն, և զգեղեցիկ դաստակերտն, ունայնացեալ զամբարս ցորենոյ և խորտակեալ կգուբս գինւոյ»[1]։

(«Տեսնում են իրենց արքունական ապարանքները քանդված, և եկեղեցիները ավերված, մեծամեծ ավանները և գեղեցիկ դաստակերտը անբնակ անապատացած, ցորենի ամբարները դատարկված և գինու հորերը խորտակված»)։

IX դարի երկրորդ կեսին Հայաստանում սկսված տնտեսական բարգավաճման՝ երկրագործության, արհեստների և առևտրի զարգացման, հին քաղաքների վերակենդանացման և բազմաթիվ նորերի առաջացման պայմաններում նոր զարկ են ստանում նաև այգեգործությունն ու գինեգործությունը։

Մատենագրական տվյալները, վիմական արձանագրությունները և հնագիտական ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այգեգործությունն ու գինեգործությունը զգալի դեր են խաղացել ոչ միայն գյուղի, այլև քաղաքի տնտեսության մեջ։ Այգիներով և պարտեզներով շրջապատված էին բոլոր այն քաղաքները, որոնք տեղադրված էին դրա համար բարենպաստ կլիմայական պայմաններ ունեցող վայրերում։ Հիշյալ աղբյուրներն ու նյութական մշակույթի հուշարձանները թույլ են տալիս պնդելու, որ այգեգործությունն ու գինեգործությունը միջնադարյան Հայաստանում բարձր մակարդակի հասան ֆեոդալական քաղաքի առաջացման և զարգացման ժամանակաշրջանում՝ IX—XIII դարերում։ Գինու վաճառքը սովորական էր ոչ միայն քաղաքներում, այլև գյուղաքաղաքներում, քարավանային ճանապարհների վրա կառուցված պանդոկներում։ Քաղաքներում առաջացել էին հատուկ գինետներ, որպիսիների գոյությունը գրավոր կերպով վկայված է անգամ Վասպուրականի Ոստան փոքրիկ քաղաքում[2]։

Հայաստանում արտադրվող գինին վաճառվում էր ոչ միայն ներքին շուկայում, այլև արտահանվում էր երկրից դուրս։

Այգեգործության և գինեգործության զարգացումը միջին դարերում և նրանց դերը քաղաքների տնտեսության մեջ կարելի է պատկերացնել Գառնիի օրինակով։ Մեծ թվով հնձանների և մառանների առկայությունը Գառնիում ինքնին պերճախոս փաստ է։ Մանավանդ մինչ այժմ հայտնի դարձած հնձաններն ու մառանները իրականում եղածների մի չնչին մասն են կազմում։ Մա-

---

1 Պատմութիւն նահանգին Սիսական, Ստեփանոսի Օրբելեան արքեպիսկոպոսի, Թիֆլիս, 1910, էջ 193։

2 Տե՛ս Насыр-и Хосрау, Сафарнаме, Москва—Ленинград, 1933, էջ 38։

տենագրական և արձանագրական տվյալները նույնպես վկայում են, թե Գառնի գյուղաքաղաքը հայտնի է եղել իր այգեգործությամբ։

Ստեփանոս Օրբելյանը պատմելով Սևանի կղզու վրա սբ. Աստվածածին և Առաքելոց եկեղեցիների կառուցման ավարտի (874 թ.) մասին թվարկում նաև այն գյուղերն ու կալվածները, որոնք նվիրաբերվեցին այդ եկեղեցիներին, դրանց թվում հիշատակվում է նաև «այգիս ի Գառնի և յԵրևան և յայլ տեղիս»[1]։

901 թ. ավարտվում է Սևանա լճի ափին գտնվող Մաքենացոց վանքի կառուցումը և Սյունյաց իշխան Գրիգոր Սուփանը վանքին նվիրում է կալվածներ, դրամական հասույթներ ձկնորսարանների կապալից, նաև «հինգ կուսպակ յԱնի, և հինգ այգի յԵրևան և հինգ հարիւր առու այգի ի դիւղաքաղաքն Գառնի և երկու այգի յԾղեգիս»[2]։

«Տանձո լանջի», «Թամդո սակի» և «Խակածորի» այգիները, որոնք գտնվում էին Գառնու դարավանդի վրա և ձորերում, հիշատակված են Գառնիի նվիրատվական արձանագրությունների մեջ։

Գառնի գյուղաքաղաքն ուներ իր արհեստագործությունը և շուկան։ Այստեղ վաճառքի էին հանվում տեղական արտադրության իրեր, ապրանքներ, դրանց թվում մետաղյա իրեր, ջնարակած և հասարակ խեցեղեն, գյուղատնտեսական մթերքներ՝ նաև գինի։ Գառնիում կային հարկահաններ (սամդատարներ), որոնք հարկեր էին գանձում արհեստավորներից, ջրաղացատերերից, ինչպես և մաքս՝ գինու վաճառքից։ Վերջինս կոչվում էր «բաժ գինւոյ»։

1291 թ. մի արձանագրության մեջ, որը փորագրվել է Գառնիի հեթանոսական տաճարի մուտքի պարակալի վրա, դեռևս տաճարի կանգուն ժամանակ, Գառնվո տեր Խոշաք իշխանուհու և նրա որդի Ամիր Զաքարեի անունից, ասվում է, թե նրանք վերացրել են Գառնիի բնակչությունից գանձվող եզան և ոչխարի հարկերը, ապա շարունակում է «վերուցաք և զգինո բաժն»[3]։

---

1 Ստեփանոս Օրբելյան, էջ 174։

2 Վիմական տարեգիր հայոց, էջ 5։ Տես նաև Ստեփանոս Օրբելյան, էջ 179։

3 Ստորև բերում ենք վերին աստիճանի ուշադրավ այդ արձանագրության բնագիրը.

Զև։ Թվ(ական)
ութեան . . . . . . (ես) Խոշաք
դուստր Աթա(պակի)ն որդս
Աթապակ Իվանէի որդո մեծին
Սարգսի եւ իմ որդին Ամիր Զաքարէ
գիր տուաք Գառնո մեր սեփական
հայրենեցս որ եղնւ ժԱ։ սպ։ շար-
խառ էր եւ ։ Ի։ Ոչխարն ։Ա։ Բալախահակ
եւ մեք վերուցաք զայս հարկ աշխ-
արհակալաց կենացն եւ մեր զա(ակ)
ացն արեւին։ Մեր հոգոյս եւ մեր
նախնեց հոգոյն համար ազատեց-
աք զեզն և զոչխար յամենայն
հարկաց։ Վերուցաք եւ զգինո բաժ
ապա թէ ոք ի մերոց կամ յաւար
հայրենակալաց կամ ի հոգացողաց
խափանել ջանա զմեր աւանդս անէծ
զԿայենի և վարձ զՅուդայի առցէ
ԾժԸ հայրապետացն կապանաւք
լիցի։ Սարգիս գրչս պաղատիմ
վատնողս դանձոյն յիշել մաղթիմ։

Ղազան խանի հարկային բարենորոգումներին նախորդող այս կարգի միջոցառումները Հայաստանում և Վրաստանում ինքնին պատմագիտական խոշոր արժեք ունեն, սակայն, դրանք նույնքան վաղանցուկ էին, որքան Ղազան խանի ձեռնարկած միջոցառումները, որոնց նպատակն էր կասեցնել երկրի անտեսական քայքայումը, բարձրացնել բնակչության հարկատվական ունակությունը և վերստին լցնել մոնղոլական պետության դատարկված գանձարանը։

Գառնիում վերացված գինու բաժն էլ շատ շուտով սկսեցին վերստին գանձել։ 1315 թ. նորից արձանագրություն են փորագրում գինու վաճառքի հարկը (հիշատակված տամղա անունով) վերացնելու մասին, բայց այս անգամ իբրև բացառություն, հօգուտ Գառնիի Սունպենց կոչվող վանքի, որն, ինչպես երևում է արձանագրություններից, խոշոր կալվածներ, մառաններ, ջրաղացներ ուներ և աշխույժ մասնակցություն էր ցուցաբերում այդ գյուղաքաղաքում կատարվող առևարին։

1315 թ. կրող այդ արձանագրության մեջ ասվում է.

«Շնորհիւն աստուծոյ ես Յոհաննէս որդի Տիրատրո և ես Վանականս որդի Յովանիսի Գառնոյ տամղատարքս... վերացաք զՍունպենց վանիցս զհասարակաց գինո և զամենայն ցեղ վաճառի ասմղա և զջաղացի մահկանա, որ սբ. Աստուածինս լուսացու լինի...»։ («Շնորհիվ աստծո ես Հովհաննես որդի Տիրատուրի և ես Վանականս որդի Հովհաննեսի՝ Գառնո տամղադարները վերացրեցինք Սունպենց վանքից առհասարակ գինու և ամեն տեսակ (մթերքների, նյութերի) վաճառքի տամղան և ջաղացի մահկանան (ջաղացից գանձվող հարկ), որպեսզի այս սուրբ Աստվածածնին (եկեղեցուն) լուսացու լինի»)։

Գառնիի պեղումներով հայտնաբերված հնձանների և նույն գյուղաքաղաքի բնակչության այգեգործական զբաղմունքի վերաբերյալ մատենագրական ու արձանագրական նյութերի ուսումնասիրությամբ ցայտուն կերպով երևան է գալիս այգեգործության և գինեգործության դերն ու նշանակությունը այդ փոքրիկ կենտրոնի տնտեսության և կենցաղի մեջ։

Դա իր հերթին օգնում է մեզ պատկերացնելու և լուսաբանելու այգեգործության բռնած տեղը, խաղողի վերամշակումը, գինեգործությունն ու գինու վաճառքը և դրանց հետ առնչվող սոցիալական երևույթների դեռևս չուսումնասիրված որոշ հարցեր՝ այգեգործության առավել խոշոր կենտրոններ հանդիսացող քաղաքների կյանքում։

## 4. ՊԵՂՈՒՄՆԵՐՈՎ ՀԱՅՏՆԱԲԵՐՎԱԾ ԻՐԵՐԸ

**Մետաղե իրեր.**—*Գառնի ամրոցի միջնադարյան շերտերի պեղումների ժամանակ հայտնաբերվել են զգալի քանակությամբ մետաղե իրեր և առարկաներ, պատրաստված երկաթից, պղնձից և բրոնզից։ Մետաղե իրերի թվում կան գործիքներ, զենքեր, մի քանի հարդարանքների մնացորդներ, պայտեր, դամեր, զարդեր և այլն։*

*Այս ամենը ցույց են տալիս մետաղի ու մետաղագործության դերն ու նշանակությունը միջնադարյան գյուղաքաղաքի բնակչության տնտեսության և կենցաղի մեջ։ Խոշոր դեր էին խաղում մանավանդ, երկաթի մշակման հետ կապված արհեստները, որը պարզ երևում է նաև Գառնիի պեղումներում հայտնաբերված հնագիտական նյութի շնորհիվ։*

**Երկաթե իրեր.**—*Վաղուց ի վեր երկաթը վճռական նշանակություն էր ստացել բնակչության անտեսության և կենցաղի մեջ։ Նրանից էին պատրաստում բազմազան գործիքներ, զենքեր, հարմարանքներ և այլ իրեր։*




*Նկ. 5. Մանգաղ*

*Գառնիում գտնված երկաթե գործիքների թիվը մեծ չէ, սակայն, դրանք ուշագրավ են իրենց կիրառական նշանակությամբ և ձևերով։*

***1950 թ.** ամրոցի հյուսիսային 4-րդ աշտարակի մոտ 2 մետր խորության վրա գտնվեց X—XI դարերի մի մանգաղ, (№ 1964/189), որը հիմքի և ծայրի մասերում թերի է, բայց ունեցել է լայն (5,5 սմ) ու բավականաչափ հաստ կտրիչ (Նկ. 5)։*

***1956 թ.** Գառնիի հեթանոսական տաճարին կից VII դարում կառուցված կլոր եկեղեցու հիմքերից ոչ հեռու և նրանց հավասար խորության վրա, վաղ*

միջնադարյան շերտում գտնվեց մի ամբողջական ուրագ, որի կոթառը դեռևս շատ հաստ չէ և աղեղնաձև տեսք ունի (տախտ. XII)։ Կոթառի վերին մասը ակոսով ու երկու կողմից դուրս ընկնող հավելվածներով սահմանազծվում է ցածի մասից։ Այս ուրագն ունի ուրույն ձև, սակայն ավելի մոտ է ժամանակակից քաղհանի թաքուչակներին, (թերևս գործածվել է իբրև այդպիսին), քան ուրագներին։

Բարեբախտաբար հնարավորություն ունենք այս վաղ միջնադարյան (VII դ.) ուրագը համեմատելու ուշ միջնադարյան (XV—XVI դդ.) մի ուրագի հետ, որը գտնվել է 1952 թ. ամրոցի մուտքի մոտ ներսի կողմից։ Այս երկրորդ ուրագից գտնվել է միայն կոթառը (№ 1966/85), իսկ կտրիչը կոթառի հետ միացման տեղից ջարդվել է և չի գտնվել։

Բնորոշը սակայն հենց ուրագի կոթառն է, որը արտաքուստ արդեն ստացել է խորանարդի ձև և ոչնչով չի տարբերվում մեր օրերում գործածվող ձեռնուրագի կոթառից։ Ուշագրավ է, որ Դվինում XI—XII դարերի շերտում գտնված ուրագը (№ 1905/50) տարբերվում է Գառնիի, ինչպես վաղ միջնադարյան, նույնպես և ուշ միջնադարյան ուրագներից և իր ձևով, մի անցողիկ միջին տեղ է գրավում՝ նրանց համեմատությամբ։

1950 թ. արևելյան 4-րդ աշտարակի մոտ գտնվեց մի երկաթե փոքրիկ մուրճ (№ 1964/182), որի կոթը նույնպես երկաթ է և միաձույլ է մուրճի գլխի հետ։ Մուրճի ծայրը դրի բերանի պես սափակ է, իսկ հիմքը հարթ է և ունի քառակուսի կարվածք։ Այս մուրճը հարմար է ոսկե, արծաթե և պղնձե իրեր, զարդեր պատրաստելու և դրվագելու համար, ուստի համարում ենք ոսկերչի մուրճ (Նկ. 6բ)։

1950 թ. գտնված մի իր (№ 1964/183) ցածում լայնացող կտրիչ-բերան ունի, իսկ վերևից ջարդված է թերևս կոթառի մոտ։ Հնարավոր է, որ դա քարտաշի փոքրիկ կացնի կտրիչը լինի (Նկ. 6գ)։

1950 թ. գտնված մի ուրիշ իր ունի դրի ձև, (№ 1964/188), սակայն երկաթը շատ է մաշված, ուստի այս ենթադրությունը կարող է թեական համարվել (Նկ. 6դ)։

1954 թ. III դարի բաղնիքի հատակից 60 սմ վերև հողի լիցքի մեջ գտնվեց երկաթե իր (№ 1968/26), որը 6 սմ երկարությամբ, սրածայր շատ հաստ գամի տեսք ունի, քիչ լայնացող գլխիկի տակ թել կապելու համար նեղացող վզով և 1.5 սմ տրամագիծ ունեցող բոլորակ կտրվածքով։ Հավանաբար դա որմնադրի ուղղալարի ծայրի կախիչ է, որով որմնադիրը որոշում էր շարվող պատի—մակերեսի ուղղահայաց լինելը (Նկ. 6ե)։

Ոսկերիչ արհեստավորի գործիք է նաև երկու ծայրից տափակ ու սուր մի երկաթե ձող (№ 1865/133), որով ոսկերիչը կարող էր փորագրություններ կատարել ոսկուց կամ արծաթից պատրաստվող իրերի վրա (Նկ. 6զ)։

1950 և 1951 թթ. Գառնիում գտնվել է նաև մեկական մկրատ, ավելի ճիշտ մկրատի մնացորդներ։ 1950 թ. գտնվածը (№ 1964/85) մկրատի միջին մասն է միացնող գամով կտրիչների և թևերի մնացորդներով։ Այս մկրատը, որը գտնվել է երկու մետր խորության վրա հողի լիցքի մեջ, իր թևերի լայն բացվածքով և կտրիչի հետ միանալու ձևով տարբերվում է Գառնիի մյուս մկրատից (որը գտնվել է ուշ միջնադարյան շերտում 0,5 մետր խորության վրա), ինչպես և Դվինում XII—XIII դարերի շերտում գտնված մկրատներից, ժամանակով նրանցից ավելի հին է և կարող է պատկանել VII—IX դարերին (Նկ. 6է)։




Նկ. 6. Երկաթե գործիքներ՝ 1) ուրագի կոթառ, 2) ոսկերչի մուրճ, 3) քարտաշի ուրագի կտրիչ, 4) գուր, 5) ուղղալարի կախիչ. 6) ոսկերչի փորագրական գրիչ, 7) մկրատի մի մասը։

Երկրորդ մկրատից պահպանվել է միայն մի թեը՝ ծայրը փոքր ինչ կոտրված (№ 1965/125)։

1951 թ. հյուսիսային երկրորդ աշտարակի մոտ գտնվեցին երկաթե տափակ, հարթ ճյուղերով մի փոքրիկ ունելիի մնացորդները (№ 1965/204)։

Գտնվել են նաև երկաթե ձողեր և շատ մաշված այլ բեկորներ, որոնք կարող էին գործիքների կամ զենքերի մասեր լինել, սակայն այնքան վատ են պահպանված, որ որոշակի ոչինչ ասել հնարավոր չէ։

Գառնիում հայտնաբերված երկաթե գործիքների թվին կարելի է դասել և դանակները, որոնք երկու տիպի են՝ չծալվող դանակներ, որոնք դաշույնի տեսք ունեն, բայց շատ ավելի փոքր են նրանցից (№ 1964/155), (№ 1967/79), (№ 1967/88) և ծալվող դանակներ, որոնք կոթի հետ միանում էին լեզվակի հիմքի վրա արված անցքի մեջ ագուցվող գամով (№ 1964/149)։




Նկ. 7. Երկաթե դանակներ։

Միջնադարյան բազմատեսակ երկաթե զենքերից գտնվել են դաշույններ և նետեր։ Ի տարբերություն ավելի հին ժամանակների երկսայրի դաշույնների, դրանք համարյա բոլորն էլ միասայրի են։ Դաշույնները ունենում էին դաստակի հատվելվածը, որի վրա երկու երեսից գամերի օգնությամբ փակցվում էին դաստակի ոսկրե կամ փայտե մասեր։ Դաշույնների կտրիչ շեղբերը լինում են մեծ կամ փոքր, լայն կամ նեղ, իսկ ծայրի մասում ուղիղ կամ փոքր ինչ կոր աղեղնաձև տեսք ունեն։ Կան և այնպիսիները, որոնց միայն բութ եզրի կամ մեջքի մասն է աղեղ կազմում, իսկ սուր կողմը ուղիղ է լինում։ Պատահում են նաև երկսայրի դաշույններ (նկ. 8)։

Նետերի ծայրերը լինում են տերևաձև, նշտարաձև, շեղանկյունի կամ գեղարդաձև, սուր բոլորակ և նեղ քառանիստ (կտրվածքում քառակուսի) ձևի (նկ. 9)։

Գտնվել են երկաթից պատրաստված ուրիշ իրեր ևս, դրանց թվում կան ձիասարքի օղեր՝ փոկի անցքի մեջ անցնող լեզվակով և առանց լեզվակի, գոտու օղ և իրար մեջ ագուցված այլ օղեր, որոնք ինչ որ սարքի մասեր են (նկ. 10)։




Նկ. 8. Երկաթե դաշույններ։





Նկ. 9. Նետի ծայրեր։

Գտնվել են նաև մի քանի կեռեր՝ մեկը պատի մեջ ամրացնելու ծայրով, մյուսները Տ տառի ձևի (Նկ. 11գ, դ), որի մի կեռը գցում էին հորիզոնական դիրք ունեցող մի ձողի կամ գլանի, իսկ մյուս ծայրից կախում որևէ իր։ Թբիլիսիում կատարված պեղումների ժամանակ, նման կեռերը հայտնաբերվել են ջնարակած անոթները թրծելու հնոցներում և դրանցից կախվում էին թրծելիք անոթները. կեռի մի ծայրը գտնվում էր պատի մեջ ամրացված կամ ձողի վրա, իսկ մյուս ծայրին անցկացվում էր անոթի կանթը։

Ուրույն ձև ունեն միջնադարյան շերտում գտնված երկաթե ինչ որ իրեր։ Դրանք լինում են աղեղնաձև կիսաշրջան, երկու երրորդ շրջանի ձևի, իսկ երկու




Նկ. 10. Երկաթե օղեր։

*ծայրերում ու մեջտեղում ունենում են գամի ձևի հավելված (Նկ. 11զ, է)։ Կարելի է ենթադրել, թե դրանք ծառայել են իբրև ավանակի պայտ։ Թերևս դրանց մի մասը ամրացվել է փայտե կահույքի ոտքերի կիսաշրջանաձև կամ սմրակաձև վերջավորության վրա՝ տալով նրանց ամրություն և գեղեցկություն։ Գտնվել է նաև զգրոցի մի երկաթե օղ—բռնակը։*



1 0 5 սմ

*Նկ. 11. Երկաթե իրեր՝ օղեր, ձող, կեռեր, պայտաձև իրեր, զգրոցի բռնակ։*

*Պեղումների ժամանակ հաճախ հայտնաբերվում են նաև եզան և ձիան երկաթե պայտեր և նրանց գամերը, որոնք ունենում են հաստ և փռված գլուխ (Նկ. 12)։*

*Պայտար արհեստավորները ձիերը կամ եզները պայտելուց առաջ նրանց սմրակները կամ կճղակները տաշում-հարթում էին մանգաղաձև, բայց մի կամ երկու կողմից բռնակ ունեցող գործիքով, որից մի օրինակ (Նկ. 12 ներքևից աջ կողմում) գտնվել է ամրոցի մուտքի մոտ (№ 1966/86)։*

*Միջնադարյան Հայաստանում երկաթից պատրաստում էին նաև խաչեր, դրանցից մի օրինակ գտնվել է Գառնիում, սակայն թևերը ջարդված են և մնում է կենտրոնական մասը. Թևերի հատման տեղում դրված է քար ագուցանելու բուն, ինչպես Աշոտ Երկաթին վերագրվող հայտնի խաչի վրա, որ*




*Նկ. 12. Եզան և ձիու պայտեր, պայտի գամ, պայտարի ատաշիչ*

*պահվում է Էջմիածնի վանքի թանգարանում: Երկաթի մի շատ փոքրիկ խաչ էլ գտնվեց վաղ միջնադարյան գերեզմաններից մեկում և դա պեղված 25 գերեզմաններում գտնված միակ իրը եղավ:*

*Ինչպես տեսնում ենք, Գառնիում հայտնաբերված երկաթե իրերը, թեև քանակով մեծ չեն, բայց թե գործածությամբ և թե ձևերով բազմազան են և բազմատիպ, մի հանգամանք, որը խոսում է երկաթի տարածված լինելու և լայն գործադրություն ունենալու մասին:*

**Պղնձե և բրոնզե իրեր։**— *Պղնձից պատրաստվում էին տնային տնտեսության մեջ օգտագործվող անոթներ, առարկաներ, կենցաղային իրեր և զարդեր։*

*Եթե երկաթից իրերը պատրաստվում էին միայն կռելու եղանակով, ապա պղնձից իրերը կարելի էր պատրաստել ինչպես կռելու, նույնպես և ձուլելու եղանակով։ Բրոնզե իրերը ձուլվում էին։*

*Գառնիում հայտնաբերված պղնձե և բրոնզե իրերը նույնպես բաժանվում են երկու խմբի՝ կռածո և ձուլածո։*

*Մողայիկ հատակով բաղնիքից քիչ դեպի հյուսիս-արևմուտք 1955 թ. բացված մի կարասի մեջ գտնվեց պղնձե կռածո մի թաս՝ դեպի վեր լայնացող եզրերով և ուռուցիկ գոտիով և մի երկարուկ ղավաթ (նկ. 13ա, բ), որի հատակը չի պահպանվել, ուստի նման է մի ծայրում լայն, մյուսում նեղ խողովակի։*

*9—10 սմ բարձրությամբ պղնձե մի թասի կես էլ գտնվել է ամրոցի մուտքի մոտ (№ 1967/61)։ Կռելու եղանակով են պատրաստված բաղնիքի շենքից ոչ շատ հեռու միջնադարյան շերտում գտնված երկու փոքրիկ ճրագներ (№ 1966/83), (№ 1967/62), որոնք մի կողմից ունեն կտուց պատրույգի համար (նկ. 13գ, դ)։*

*Այս ճրագներից մեկի (№ 1967/62) հետ միասին գտնվեց նաև պղնձե կռածո ափսեի՝ հորիզոնական դիրքով ետ ծռած շրթի բեկոր (№ 1967/62)։ Կռածո իրերի վրա կանթերը երբեմն էլ կարկատանը կպցնում էին պղնձե գամերի օգնությամբ։ Նման անոթի բեկորները հայտնաբերվել են 1950 թ. պարսպի արևմտյան 7-րդ աշտարակի մոտ։ Ուշադրավ է ամրոցի հյուսիսային պարսպից ոչ հեռու բացված միջնադարյան շինարարությունների մնացորդների մեջ գտնված փոքրիկ կշեռքի պղնձե կռածո նժարը (նկ. 13ե), որի եզրերից երեք անցք է բացված թել անցկացնելու համար (№ 1963/29)։ Բարակ ու թեթև թիթեղից 5,5 սմ տրամագծով նժարներ ունեցող կշեռքով կարելի էր կշռել միայն մի քանի գրամ, հետևաբար այսպիսի կշեռքը կարող է գործածվել ոսկերիչի, դեղագործի կամ ալքիմիկոսի արհեստանոցում։ Պղնձե բարակ թերթերից նժարաձև մի իր էլ ավելի փոքր չափի, այն է՝ 5,5 սմ տրամագծով (№ 1963/36) գտնվել է 9-րդ աշտարակի մոտ։*

*Գտնված պղնձե կռածո իրերի թվին են պատկանում նաև մի մատանի և այլ բեկորներ, որոնք այնչափ են մաշված, որ դժվար է ասել, թե ինչ իրի մասեր են։*

*Զգալի է նաև պղնձից և բրոնզից ձուլված իրերի թիվը։*

*Ձուլածո իրերից շատ ուշադրավ են մի միջին մեծության զանգի բեկորները, որի արտաքին մակերեսի վրա վերևի մասում շուրջանակի անցնում է մի գոտի, իսկ դրանից ցած, մինչև զանգի շուրթը ամբողջ մակերեսը ռելիեֆ գծերով բաժանված է պսակաթերթերի։ Զանգի ցածի եզերքը պսակվում է ուռուցիկ գոտիով։*

*Մի փոքրիկ զանգ էլ, նույնպես ձուլածո, գտնվել է ամրոցի մուտքից ոչ հեռու։ Սա ունի ուռուցիկ ելուստներ, ուսերի վրա և գոտի՝ ցածի եզերքի մոտ (№ 1967/59)։ Այս զանգերի չափերից դատելով կարելի է ասել, որ մեծ զանգը գործածվել է ուղտի վզից կախելու, իսկ փոքրը ուղտի կամ ձիու վզից կախելու համար։ Կարավանների ուղտերը կամ ձիերը զանգերով զարդարելը շատ հին սովորություն է, պահպանվելով հասել է մինչև մեր օրերը։ Բացի*

այս զանգերից, Գառնիում գտնվել են նաև մանր ձվաձև զանգակներ կամ բոժոժներ, որոնք թելի վրա շարված կապվում էին գրաստների (ձիերի, էշերի) վզին, կամ գործածվում էին իբրև խաղալիք մանուկների համար։

*Միջնադարյան մի գերեզմանում (XII—XIII դդ.) 8—9 տարեկան աղջի-*






Նկ. 13. Պղնձե իրեր՝ թաս, գավաթ, ձեթի ճրագներ, կշեռքի նժար (բոլորը կռածո), անոթի կափարիչ (ձուլածո)։

կմախքի մնացորդների հետ միասին գտնվեց բրոնզե բոժոժ և գրաֆիտից մի աշակերտական մատիտ՝ քարե տախտակի վրա գրելու համար (Նկ. 14գ)։ Այս բոժոժները ցածից ունենում են սովորական բացվածքը, իսկ լեզվակի փոխարեն նրանց մեջ լինում է զանգահար մի գնդիկ։

Հնում հայելիներ պատրաստում էին մետաղներից, գլխավորապես արծաթից և բրոնզից։ Բրոնզե հայելիներ գտնվել են նաև Գառնիում։ Դրանցից

մեկը 8,7 սմ տրամագծով բրոնզե շրջանակ է, որի հակառակ երեսը զարդարված է ոլորուն գեղեցիկ զարդերով և փոքրիկ ուռուցիկ գնդիկներով (№ 1965/108)։ Նույն այդ կողմից հայելին ունի փոքրիկ հավելված բռնակ։ Մյուս հայելին (№ 1965/107) ունի նույն չափերը, բայց ձուլված է այլ կաղապարի օգնությամբ, քանի որ սրա հակառակ կողմի զարդերը այլ բնույթ ունեն։ Դրանք տեղ-տեղ արված գծերի և գնդիկների խմբեր են։ Այս հայելու մի կողքը ջարդվել է և թերի է։ Գառնիում գտնվել են նաև բրոնզե այլ հայելիների բեկորներ։




Նկ. 14. Պղնձից և բրոնզից ձուլված զանգ, զանգակներ և գրաֆիտ

Բրոնզե ձուլածո անոթների մնացորդներից գտնվել է միայն մի սափորի կափարիչը՝ սրածայր հավելվածով (№ 1965/111)։ Ձուլածո գդալներից մեկը ճաշի գդալ է, որի մի մասն է պահպանվել (№ 1967/68), իսկ մյուսը երկար պոչով, բայց շատ փոքրիկ գդալիկ է, որպիսիները օգտագործում էին ոսկե-

րիչ, ղեղագործ և ալքիմիկոս արհեստավորները։ Այսպիսի դդալներ գտնվել են նաև Դվինում[1]։

Պղնձից և բրոնզից ձուլում էին այլևայլ նպատակների համար օգտագործվող խողովակներ։ Մի խողովակ 1 սմ տրամագծով և 15 սմ երկարությամբ գտնվել է 1950 թ. պարսպի 7-րդ աշտարակի մոտ։ Խողովակի մի ծայրը թերի է, իսկ մյուս ծայրն ունի ռելեֆ պսակ (№ 1964/178)։




Նկ. 15. Պղնձե հայելի։

Միջին դարերում սովորական երևույթ էր պղնձից կամ բրոնզից խաչեր ձուլելը։ Անիում շատ են գտնվել նման խաչեր։ Երկու ձուլածո խաչ էլ գտնվել է Գառնիում։ Դրանցից մեկը փոքրիկ է և իր ձևով հին, կարող է թվագրվել X դարով։ Մյուս խաչը մեծ է, բայց պահպանվել են միայն անկյուն կազմող երկու թևերը, որոնց ծայրի ոչ խիստ որոշակի բողբոջաձև տեսքը և փոսիկները բնորոշ են XII դարի համար (№ 1969/36)։

Շատ սովորական է եղել նաև բրոնզից կամ պղնձից զարդեր ձուլելը, որով նույնիսկ առանձին արհեստավորներ էին զբաղվում։ Պղնձից զարդեր ձուլելու արհեստանոցների մնացորդներ հայտնաբերվել են Դվինի միջնաբերդում[2], և Անիի հյուրանոցներից մեկին կից[3], որը թվագրվում է XII—XIII դարերով։ Գառնիում այդպիսի արհեստանոց չի բացվել, բայց ձուլածո զարդեր գտնվել են։ Պղնձից է ձուլված մի հարթ ժապավենաձև ապարանջան 0,6 սմ լայնքով, որի կենտրոնական մասը, թեև հարթ մակերես ունի, բայց ավելի բարձրադիր է երկու եզրերի համեմատությամբ։ Ավելի հաճախակի են բրոնզե օղերի, մատանիների գյուտերը։ Մատանիներից մի քանիսի վերին մասը լայն է լինում և ունենում է ակ ագուցանելու բուն, բայց միջին դարերում ի տարբերություն անտիկ ժամանակաշրջանի առանց քարի կամ ակի մատանիները ավելի հաճախ են հանդիպում։

Գտնվել են նաև բրոնզե վարսակալ մեծ քորոց ընդաձև գլխով, գոտու օղեր և այլ իրերի բեկորներ։

---

[1] Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները (նկ. 150)։

[2] Նույն տեղում (№ 150)։

[3] И. Орбели, Каталог Анийского Музея древностей. С.-Петербург, 1910, стр. 107.



Նկ. 16. Պղնձե իրեր՝ խողովակ, խաչ (ձուլածո), ձող օղավոր գլխով, ղարղ ձուլելու կաղապար, մատանիներ, գդալիկ

Վերջապես, հիշատակության արժանի է 1,5 սմ տրամագծով և 2 սմ բարձրությամբ սափորաձև իր կամ ղարղ ձուլելու բրոնզե երկփեղկ կաղապարի մի փեղկի գյուտը՝ քառախորան եկեղեցու հիմքից ոչ հեռու, որով պարզվում է նրա ժամանակը, այն է՝ վաղ միջնադարյան լինելը։

Պղնձե կռածո և ձուլածո իրերի մեծագույն մասը իր բնույթով այնպիսին է, որ չի կարող բերված լինել ուրիշ քաղաքներից, այլ պատրաստվել է անեղում

և ցույց է տալիս պղնձագործական արհեստի տարբեր ճյուղերի առկայությունը միջնադարյան Գառնի գյուղաքաղաքում։

Միջնադարյան ոսկերչության և արծաթագործության նմուշներ Գառնիում դեռևս չեն գտնվել, եթե չհաշվենք արծաթե լարերից հյուսված շրջանակների շղթա կազմող և անկյուններում ավելի բարդ ձևավորում ունեցող մի զարդ, որը փակցված է եղել զգեստի կամ որևէ այլ գործվածքի վրա, որի հետքերը պահպանվում են՝ կպած մետաղե զարդին (№ 1966/72)։ Դա կարող է զգեստի օձիքի կամ փեշերի անկյուններում դրվող զարդ լինել, գուցե և փակցված է եղել որևէ այլ կիրառություն ունեցող գործվածքի վրա (նկ. 17)։




Նկ. 17. Զարդ հյուսված արծաթյա թելերով։

Զգեստների վրա փակցվող ծաղկաձև կամ այլ ձևի մետաղե հյուսածո զարդեր, ինչպես հայտնի է, գտնվել են նաև Անիում[1]։

**Քարե սարքեր և իրեր:**—Հայկական լեռնաշխարհում շինարարության ինչպես և զանազան սարքերի ու հարմարանքների համար պիտանի քարեր շատ կան և հայ ժողովրդի տնտեսության ու կենցաղի մեջ քարե հարմարանքները հնուց ի վեր խոշոր դեր են խաղացել։

Քարե ամենախոշոր սարքերը ջրաղացի, մանավանդ ձիթհանի քարերն էին։ Գառնի գյուղի կենտրոնում գտնվում է կտավատի ձիթհանի հսկայական մեծության մի քար, որը միջնադարյան ժամանակներից է պահպանվել։ Գառնիում եղել են և ջրաղացներ, որոնց մասին հիշատակություն գտնում ենք Գառնիի վիմագրական արձանագրությունների մեջ, սակայն այդ ջրաղացների քարերը մեզ չեն հասել։

Գառնիի պեղումների ժամանակ հայտնաբերվել են տեղական բազալտից պատրաստված բազմաթիվ սանդեր և երկանքաքարեր։ Կան մեծ ու փոքր սանդեր (նկ. 18), գտնվել են նաև դրանց քարե վարսանդներից մի քանիսը։ Այս սանդերում ծեծում էին ձավար, աղ, իսկ կավագործ արհեստավորները մանրում էին կավը, մանավանդ ջնարակի համար օգտագործվող դայլախազը և ավազը։

Երկանքաքարերը միջին դարերում լինում էին բոլորաձև, ինչպես նրանք պահպանվել են մինչև այժմ։ Երկանքաքարերից մեկը (վերին քարը) մնում է

[1] И. Орбели, Каталог Анийского Музея древностей, С.-Петербург, 1910, стр. 34—35.

կիսամշակ, մի հանգամանք, որը ցույց է տալիս, թե Գառնիում տարածված բազալտե երկտնքաքարերը պատրաստվում էին տեղում։

Պեղումների ժամանակ ուշ միջնադարյան (XV—XVII դդ.) մի բնակարանում հայտնաբերվեց քարից պատրաստված սանդաձև, բայց ավելի բարակ պատեր և մեծ տարողություն ունեցող մի բոլորաձև տաշտ, որի վերին մասում շրթից քիչ ցած բացված է մի անցք։ Եթե դա բաղնիքի հարմարանք չի եղել, ապա կարող էր օգտագործվել թերևս փոքր քանակությամբ խաղող ճզմելու համար։



Նկ. 18. Քարե սանդեր։

Ամրոցի ներսում մի բնակարանի մեջ գտնվեց քարից պատրասաված մեծ խուփ, որի մակերեսը զարդարված է եղել վարդյակներով և այլ զարդերով, եզրի մոտ ունի բարձրագիր բռնակ (Նկ. 20)։ Նման խուփերը կարող էին օգտագործվել իբրև կափարիչ բնակարաններում փորվող հորերը կամ խոշոր կարասները ծածկելու համար։

Պեղումների ժամանակ գտնվել են նաև սրաքարեր կամ հեսաններ։ Դրանց թվում կան ավելի խոշորահատիկ քարեր, որոնցով սրում էին գերանդի, մանգաղ և այլ գործիքներ՝ քարը շրով թրջելով։ Մանրահատիկ սրաքարերը չափերով էլ ավելի փոքր են և գործիքներն ու դանակները սրելուց առաջ քարի վրա յուղ էին քսում։ Երկու տեսակի սրաքարերից էլ նմուշներ գտնվել են և



Նկ. 19. Երկանքներ։

բոլորն էլ գործածությունից խիստ մաշված վիճակում (նկ. 21)։ Սրաքարերից մեկի վերին ծայրը եռանկյունաձև բարակում է և վրան բացված է անցք, սրաքարը գոտուց կախելու համար։

Քարերից պատրաստում էին նաև բրուտի կոկիչներ (նկ. 21դ), որոնց օգնությամբ հղկում էին կավե անոթների մակերեսները։ Գունավոր հողի շփոթով պատած և թրծած անոթներին՝ կոկելու շնորհիվ հաղորդում էր ողորկություն և փայլ։

Ամրոցի միջնադարյան շերտում գտնվել են մարմարե երկու գունդ մեկը 16 սմ տրամագծով և շատ ողորկ մակերեսով (№ 1966/69) և մյուսը 10 սմ

տրամագիծ ունեցող և նույնպես ողորկ մակերեսով ռնոր կեսը։ Գտնվել է նաև մարմարե հարթ տախտակի բեկոր 2,5 սմ հաստությամբ։ Միջնադարյան գեղագործության վերաբերյալ բնագրերը թույլ են տալիս ենթադրելու, որ մարմարե նման գնդերը և տախտակները օգտագործվում էին գեղորայքը աղորելու (լոսելու) համար։ Հավանաբար նույն նպատակով են օգտագործվել քարե փոքրիկ հավանգները և գասաանները։ Վերջիններից մի նմուշ նույնպես գտնվել է Գառնիում (№ 1966/45)։




Նկ. 20. Քարե խուփ, քանդակազարդ։

Գտնվել են քառանկյունի ձևի քարե երկու իրեր, ետևի կողմից հարթ և կոկ մակերեսով, իսկ վերին մակերեսի կողմից ոչ այնքան հարթ, մի ծայրում ունեն քիչ բարձրագիր պսակ, որի տակ կենտրոնական մասում անցք է բացված՝ թել անցկացնելու համար։ Դատելով քարի տեսակից (պեմզա կամ չեչաքար) և ձևից պետք է ենթադրել, թե դրանք օգտագործվել են իբրև բաղնիքի տրորիչներ, որով լողացողները մաքրում էին ոտքերի կրունկները (№ 1964/242—1964/297)։

Վերջապես պետք է հիշատակել նաև իլիկների գլուխները, պատրաստված մեծ մասամբ կրա-ավազային քարերից կամ մերգելներից։ Իլիկի գլուխներն ունենում են 4 սմ տրամագիծ, երկու կամ մի կողմից հարթ, կամ կորնթարդ մակերես, երբեմն էլ՝ ծայրը հատած կոնի տեսք։




Նկ. 21. Սրաքարեր և բրուտի քարե կոկիչ։




Նկ. 22. Մարմարե գնդեր, քարե հավանգ և քարե կոկիչ-տրորիչներ։

Ջուլհակության կամ անկվածագործության հետքերը Գառնիում դեռևս աննշան չափով են երևան եկել։ Գործվածքի հետքեր, ինչպես ասվեց վերևում, գտնվել են արծաթե հյուսածո զարդի վրա։ Ավելի ուշադրավ է կավից պատրաստված և ջնարակած խեցեղենի բեկորներ վրան ագուցված կոնաձև գլխով մի իր, որը հավանաբար ջուլհակի ուղղահայաց հաստոցի կախիկ է եղել (Նկ. 23դ)։







Նկ. 23. [illegible] գլուխներ քարից և կավից, ջուլհակի հաստոցի կավե կախիկ։

Գառնիում արտադրվել է ինչպես հասարակ, (անջնարակ), նույնպես և ջնարակած խեցեղեն, բայց հախճապակի չի արտադրվել, որի խեցիներն էլ շատ սակավ են հանդիպում և բերված են այլ տեղերից։

Ապակեղեն։—Հաճախակի են ապակյա անոթների և ապարանջանների բեկորների գյուտերը։ Դրանք բազմազան են ըստ ձևի, գույնի և պատկանում

են տարբեր ժամանակների՝ սկսած վաղ միջնադարից, մինչև ուշ միջնադարը, այդ պատճառով էլ մեծ հետաքրքրություն են ներկայացնում։

Միջնադարյան ապակու հնագույն օրինակներից են կանաչավուն հաստ ապակուց, լայն պսակով մի մեծ շշի կարճ վիզը (№ 1966/58) և նման շշի պսակի կեսը (№ 1966/70), որի հաստությունը 4 միլիմետր է, պսակի հորիզոնական մասի լայնքը 12 միլիմետր, գույնը կանաչավուն-երկնագույն նման I—III դարերի ապակիներին։ Այդպիսի շշեր հայտնի են եղել IV—VI դարերում։ IV—V դարերով կարող է թվագրվել հաստ բաց դեղնավուն ապակուց պատրաստված թասի շուրթի բեկորը, որի վրա պտտվող անիվի օգնությամբ տաշված հինգ շրջանաձև բլթակներ կան (ինչպես բյուրեղապակին է մշակվում)։ Նույն ժամանակաշրջանի մի շագանակագույն փոքր թասի շրթի բեկորի վրա կա հորիզոնական գոտի և ատամնավոր վերադիր զարդ։ Մի այլ բեկորի քառանկյունի ձևի մեծ ռելեֆ զարդը (1×1,3 սմ) 4 մմ բարձրություն ունի։ Գտնվել են նաև անտիկ շրջանի պատուհանի հարթ ապակուց ոչնչով չտարբերվող բեկորներ։ Շատ բնորոշ են հաստ, հարթ, քառակող մեծ շշերի բեկորները բաց դեղնավուն, կանաչ երկնագույն երանգներով։ Կա բոլորովին թափանցիկ թասի բեկոր։ Գտնվել են նաև նույն ժամանակաշրջանի անոթների և բաժակների բեկորներ։

IV—VI դարերի ապակեղենը անոթները ձևերով մշակման և զարդարման առանձնահատկություններով և ամեն ինչով դեռևս կրկնում է անտիկ ժամանակաշրջանի ապակեգործության տրադիցիաները և փաստորեն կազմում է նրա շարունակությունը։

Միջնադարյան ապակին ավելի ու ավելի է տարբերվում անտիկ ժամանակաշրջանի ապակուց։ Առաջանում են շրջանաձև հենակով և բարձր ոտքով գավաթները։ Երբեմն դրանց շրջանաձև կամ սկավառակաձև հենակի վրա թեք գծեր են լինում։ Այս գավաթները գտնվել են VII—IX դարերի կուլտուրական շերտում։

IX դարով կարելի է թվագրել թափանցիկ, քիչ ինչ դեղնավուն անոթի հատակը, որի վրա կրկնագիծ լայն շրջան է փորագրված։

Ավելի մեծ է XI—XIII դարերի ապակեղենի տարբերությունը հին ապակեղենի նմուշներից։ Ապակյա անոթների պատերի վրա արվում են վերադիր զարդեր, կապույտ փիրուզագույն զանգվածից կետեր և գծեր, վերջապես առաջանում է գույներով նկարազարդված ապակին, որը բնորոշ է XII—XIII դարերի համար (նկ. 24)։

**Ապակյա ապարանջաններ։**— Գառնի ամրոցի ներսում կատարված պեղումների ժամանակ գտնվել են ապակյա ապարանջանների մի քանի տասնյակ բեկորներ։ Ըստ ձևի դրանք լինում են հարթ մակերեսով և կտրվածքում կլոր, հարթ, բայց դրսի մակերեսը եռրնթարդ, ներսից տափակ, կտրվածքով ոսպնյակի ձևի, լինում են և քառանիստ ապարանջաններ, իսկ ամենից հաճախակի են ոլորուն ապարանջանները, ըստ որում ոլորվածքը լինում է խիտ կամ նոսր, ավելի կամ պակաս ռելեֆ։

Վարպետները աշխատել են ապարանջանների երկու ծայրերը միացման տեղում ձևավորել, հաստացնելով կամ տափակացնելով, երբեմն ասես օձի գլխի տեսք տալով նրանց։ Ապարանջանների ապակին սովորաբար լինում է ոչ թափանցիկ, սակայն կան և թափանցիկ կամ կիսաթափանցիկ ապակուց պատրաստված շատ օրինակներ։ Սակավ հանդիպում են նաև փիրուզագույն ապակենման զանգվածից (սմալտայից) պատրաստված ապարանջաններ։




Տախտակ I. Ապակու բեկորներ։

Ապարանջանները բազմազան են նաև ըստ գույների և երանգների։ Հիմնական գույներն են՝ սև, կանաչ, կապույտ, դեղին, սակայն ավելի բազմազան են ապարանջանների երանգավորումները։ Կանաչ ապարանջանների երանգներն են՝ դուրեկան կանաչը, բաց կանաչը, փոքր ինչ դեղնավունը. հազիվ նկատելի կանաչավունը։ Կապույտ գույնի ապակուց պատրաստված ապարանջանները սովորաբար ունենում են ողորկ մակերես և շատ գեղեցիկ



Նկ. 21. Ապակու բեկորներ՝ գծագիր և գունազարդ։

են, բայց նույնպես երանգավորված են։ Ամենադուրեկան կապույտը լինում է կոբալտի գույնի. դա մուգին մոտեցող, բայց վճիտ կապույտ երանգն է։ Հանդիպում են նաև բաց կապույտ, երկնագույն, ավելի բաց երկնագույն, բաց երկնագույն-կանաչավուն ապարանջանների բեկորներ։ Դեղին գույնը նույնպես իր երանգավորումներն ունի. բացի մուգ դեղինից և դուրեկան դեղինից լինում են ավելի հաճախ բաց դեղին, հազիվ նկատելի դեղնավուն, դեղնականաչավուն ապարանջաններ։ Փիրուզագույն լինում են միայն սմալտայից պատրաստված ապարանջանները։

Շատ շքեղ են սև ապակուց պատրաստված ապարանջանները, որոնք լինում են հարթ մակերեսով և նուրբ ոլորուն։

Ապարանջանները պատրաստվում էին ինչպես կանանց, նույնպես և երեխաների համար։ Համարյա ամբողջական ապարանջանների տրամագիծը 8,5 սմ է, իսկ մի ամբողջական բաց երկնագույն, սակայն սպիտակ թաղանթով պատված և հնաձև ապարանջանի տրամագիծը 4 սմ է հասնում։ Պարզ է, որ եթե առաջինները պատրաստվել էին մեծահասակների համար, ապա վերջինը երեխայի ապարանջան է։

Առավել հին ապարանջանները, թվում է թե, փիրուզագույն զանգվածից և դուրեկան կապույտ ապակուց պատրաստվածներն են, որոնք ունեն ողորկ,

ներսում հարթ և դրսից կորընթարդ մակերես։ Դրանք կարող են թվագրվել V—VII դարերով։ Նրանցից մի քանիսի վրա գոյացել է սպիտակ թաղանթ, որը սովորական իրիզացիայից տարբերվում է և խոսում է նրանց ավելի հին լինելու օգտին։ Սակայն նման հին ապարանջանները բացառություն են կազմում։ Ապակյա ապարանջանները սովորական են դառնում և լայն գործադրություն ստանում ֆեոդալական քաղաքի առաջացման և զարգացման ժամանակաշրջանում IX—XIII դարերում, դառնալով առավելապես շուկայի համար արտադրվող էժանագին զարդ (նկ. 25)։ Գառնիում գտնվել են նաև սմալտայից պատրաստված մատանիների բեկորներ։



Նկ. 25. Ապակյա ապարանջանների բեկորներ։

Ոսկորե իրեր։—Ամրոցի պեղումների ժամանակ շատ հաճախ են գտնվում ոսկորներ, որոնք սղոցված են և երևում է, որ նրանցից իրեր, առարկաներ են պատրաստել։ Հաճախակի են մանավանդ եղջերուի եղջյուրների սղոցած մնացորդները, մանավանդ նրանց հիմքի մասերը, որոնք օգտագործել հնարավոր չէր։ Բացի այդ մնացորդներից գտնվել են նաև ոսկորե պատրաստի իրեր և առարկաներ։ Դրանցից պետք է հիշատակել իլիկների գլուխները, որոնք պատրաստվում էին կենդանիների վերջավորությունների հոդերի խրճոսկներից և երբեմն էլ ավելի խոշոր էին լինում քան իլիկների քարե գլուխները։

Գտնվել է վարազի ժանիքից պատրաստված մի շատ ուշագրավ գործիք, նման գյուղերում գործածվող կեռարներին, որոնցով կեռ էին մանում ճիլ խոտերից, պարան՝ կանեփի թելից։ Ոլորվելիք կեռը կամ պարանը անցկացվում էր կեռարի կեռ ծայրին, իսկ հիմքի մոտ լինում էր անցք, որի մեջ ագուցվող մեխաղե գամի վրա անցկացվում էր բռնակը, որը պտտեցնելով մի մարդ մանում էր կեռը կամ պարանը, իսկ մյուսը, որն ավելի հմուտ էր լինում, անընդհատ ավելացնում էր մանվելիք ճիլ խոտը կամ կանեփի թելերը։ Կեռարի հիմնական մասը սովորաբար լինում էր այծի եղջյուրից, որի ծայրը տաքացնելով ծռել կեռ դարձնելը դժվար չէր։ Գառնիում գտնված կեռարը պատրաստված է վարազի ժանիքից, որի ծայրը ծռել հնարավոր չէր, ուստի տաշել հարմարեցրել են լարը կամ պարանը վրան կապելու համար (№ 1966/2)։

Գտնվել է ոսկորից պատրաստված տափակ, բայց երկու կողմից սրածայր մի գործիք (№ 1963/50), որը, թվում է, թե բրուտի գործիք է, որով անում էին կավե անոթների գծագիր զարդերը։

Բնորոշ է, որ այդ ամանների գծագիր զարդը ավելի պլաստիկ է. այս ասես ճնշումով կատարված լինի, ոչ թե մետաղի սրածայր գործիքով քերված։






Տախտակ II. Ապակյա ապարանջաններ։

Դեռևս թաց կավի վրա գծագիր զարդեր անելը հարկավ ավելի հարմար էր ոսկորի քան մետաղե գործիքով։

Ոսկորից է պատրաստված մի փոքրիկ իր (1,6 սմ երկարությամբ), որի միջանցքը նեղ է, իսկ ծայրերը լայնանում են (№ 1967/56)։ Նման գործիքով հեչանում—կոկում էին բամբակի թելը։

Գտնվել է նաև ոսկորե սանրի կեսը, որի մի կողմի ատամները ավելի խոշոր են եղել, իսկ մյուս կողմինը մանր, ինչպես ժամանակակից սանրերինը (№ 1965/193)։ Զմածիր կտրվածքով մի ոսկորե ձողի մեջ երկարությամբ անցք է բացված և երկու ծայրերից սղոցված է (№ 1967/66)։ Այս ձողը մանր հատվածներով սղոցելով կարելի էր ստանալ ուլունքներ, որպիսի նմուշներ Գառնիում գտնվել են։

Ոսկորից պատրաստել են նաև երաժշտական գործիքներ, մասնավորապես սրինգ։ Խոշոր թռչունի ազդրոսկրից պատրաստված մի սրինգ գտնվել է մայրքի բաղնիքից ու հնոց միջնադարյան շերտում։ Սրինգը բավականաչափ երկար է, թեև երրորդ անցքի մոտից ջարդված է (№ 1969/82) (նկ. 26)։

Ուլունքներ։—Բնակչության կենցաղի մեջ սովորական են եղել զանազան զարդերը։ Վերևում խոսվեց մետաղներից պատրաստվող ապարանջանների, մատանիների, ականջօղերի, ապակյա ապարանջանների մասին։ Այդ ամենից բացի ամեն տեսակի նյութից՝ քարից, ապակուց, կամ ապակու խմորից, մետաղներից, կավից, ոսկորից պատրաստում էին զանազան տեսակի ուլունքներ և կախիկներ։ Հին ժամանակի ուլունքներից դրանք տարբերվում էին իրենց ձևերով, տեսքով, մշակման առանձնահատկություններով։ Միջին դարերի համար բնորոշ է բոլորովին նոր տիպի ուլունքների և կախիկների երևան գալը։ Դրանք պատրաստվում էին հախճապակու համար նյութ ծառայող սպիտակ կավից և ծածկվում բաց երկնագույն ջնարակով։ Նման ուլունքներ և կախիկներ գտնվել են XII—XIV դարի շերտերում և միանգամայն բնորոշ են այդ ժամանակաշրջանի համար։

Դրամներ։—Գառնիում պեղումների, ինչպես շինարարական այլ աշխատանքների ժամանակ դրամներ շատ հաճախ են հայտնաբերվել։ Դրանց ուսումնասիրությամբ զբաղված է Պետական պատմական թանգարանի դրամագետ Խ. Մուշեղյանը, ուստի կսահմանափակվենք մի քանի ընդհանուր տեղեկությունների հաղորդելով։

Գտնվել են ինչպես հելլենիստական-հռոմեական ժամանակաշրջանի, նույնպես և միջնադարյան դրամներ, բայց վերջիններիս թիվը անհամեմատ ավելի մեծ է։ Արաբական դրամներ քիչ են գտնվել և դրանք պատրաստված են ամբողջապես արծաթից. արաբականներից փոքր ինչ ավելի է բյուզանդական դրամների թիվը, որոնք պատրաստված են ոսկուց և պղնձից։ Գառնի գյուղի բնակիչները երկու անգամ գտել են բյուզանդական ոսկե դրամների գանձ. դժբախտաբար այդ գանձերից հատ ու կենտ դրամներ են Պետ. պատմական թանգարան հասել։ Բացի սելջուկյան առանձին դրամներից, 1957 թ. գտնվեց և 54 պղնձադրամներից բաղկացած գանձ։ Հաճախակի է վրացական, մանավանդ Թամար թագուհու և Դավթի դրամների գյուտերը։ Մեծ է մոնղոլական ժամանակաշրջանի դրամների թիվը։ 1941 թ. արծաթե և պղնձե միջնադարյան դրամների մեծ գանձ է գտնվել Գառնի գյուղի արևելյան ծայրի ջրանցքաշինության ժամանակ։ Գանձի մեջ եղել են տարբեր ժամանակների դրամներ։




Նկ. 26. Ոսկորե իրեր՝ կեռար, ձող, սանր, սրինգ։

Մոնղոլական հետագա ժամանակների արծաթյա դրամների մի մեծ գանձ գտնվել է գյուղի հյուսիս-արևելյան ծայրին (1958)։ Գանձը գտնող կոլտնտեսական Օնիկ Բարայանը Պետական պատմական թանգարանին է հանձնել 500 դրամներ, որոնք ինչպես մեզ հաղորդեց թանգարանի դրամագետ Խ. Ա. Մուշեղյանը, մոնղոլական են և վերաբերում են XIII գ. երկրորդ կեսին։

Գառնիի առավել ուշ դրամները կտրված են Իրանում, Թուրքիայում և եվրոպական երկրներում։ Վերջիններից մեկը Հեսենի լանդգրաֆի, մյուսը Տրանսիլվանիայի պրինցեպսի արծաթե խոշոր դրամներն են կտրված XVI դարի վերջերին և XVII դարի սկզբներին։

Եթե միջնադարյան տարբեր պետությունների դրամների գյուտերը նշանավորում են Հայաստանի տնտեսական, առևտրական և քաղաքական կապերը մի շարք երկրների հետ, և ցույց են տալիս տեղական շուկայի առկայությունը միջնադարյան Գառնի գյուղաքաղաքում, ապա XVI—XVII դարերի կամ ուշ միջնադարյան դրամները դրսևորում են հայ վաճառականների կապերը Իրանի, Թուրքիայի և Եվրոպայի հետ։ Բացի այդ, իրանական և թուրքական դրամները գործածություն ունեին և Հայաստանում։ Միաժամանակ պետք է նկատի ունենալ, որ այդ դրամները կարող էին Գառնի ընկնել նաև այդ երկրներից անընդհատ Հայաստանի վրա հարձակվող հրոսակների միջոցով։

## 5. ԳԱՌՆԻԻ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԽԵՑԵՂԵՆԸ

*Ինչպես Հայաստանի միջնադարյան քաղաքների՝ Դվինի, Անիի, նույնպես և Գառնի գյուղաքաղաքի պեղումների ժամանակ նյութական մշակույթի ամենից ավելի առատ հանդիպող մնացորդները պատկանում են խեցեղենին, և դա բնական է՝ խեցեղենը մեծ տեղ էր գրավում բնակչության կենցաղում, իսկ նրա բեկորները լավ են պահպանվում դեանի տակ։ Գառնիի պեղումներով երևան բերված հնագիտական նյութի մեջ քանակով, տեսակների բազմազանությամբ խոշոր տեղ է գրավում հասարակ խեցեղենը (աղաթասեր, պնակներ, պուլիկներ, մեծ և փոքր չափի կճուճներ, կավե սաջաեր, ղանաղան ձևի և չափի գավեր, սափորներ, կարասներ և այլն)։*

*Գառնիում հայտնաբերված խեցեղենը կարելի է բաժանել երկու մեծ խմբի՝ հասարակ և ջնարկած։ Հասարակ խեցեղենը ըստ կիրառության և պատրաստման տեխնիկայի կարող է բաժանվել մի քանի ենթախմբի։ Ջնարակած խեցեղենն իր հերթին բաժանվում է երկու խմբի. ա) ջնարակած կարմրախեցի անոթներ, բ) հախճապակի (սպիտակախեցի)։ Կարելի է մի առանձին խմբի մեջ դասել շինարարական խեցեղենը, որը լինում է թե հասարակ և թե ջնարակած (աղյուսներ, փողրակներ, շքաղյուսներ և այլն)։*

*ՀՍՍՌ ԳԱ Գառնիի հնագիտական արշավախմբի ղեկավար Բ. Ն. Առաքելյանը Գառնիի պեղումների առաջին տարիների արդյունքներին նվիրված իր «Գառնի» աշխատության առաջին պրակում[1] նպատակ չհետապնդելով ամբողջությամբ ներկայացնելու միջնադարյան Գառնիի հնագիտական նյութը, շատ ընդհանուր գծերով անդրադարձել է 1949—1950 թթ. պեղումներով հայտնաբերված միջնադարյան խեցեղենին։ Գառնիի խեցեղենի առանձին նմուշներին Բ. Ն. Առաքելյանն անդրադարձել է նաև «Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում» մենագրության մեջ։ Մեր նպատակն է ուսումնասիրել Գառնիում հայտնաբերված խեցեղենի բոլոր տեսակները, նրանց արտադրության առանձնահատկությունները, դերն ու նշանակությունը և աղերսները հարևան խոշոր քաղաքների, մասնավորապես Դվինի խեցեղենի հետ։*

Հասարակ խեցեղեն.—*Գառնիի պեղումների ժամանակ հայտնաբերված հասարակ խեցեղենի բազմազան նմուշների մեջ ամենից ավելի հանդիպում են խոհանոցային, մրապատ, լայնաբերան կճուճների, պուտուկների, պնակների, ճրագների և այլնի ամբողջական օրինակներ ու բեկորներ, որոնք ինչպես հայտնի է, լայնորեն օգտագործվում էին կենցաղային կարիքների համար։ Քիչ չեն նաև ջուր, կաթ և այլ հեղուկ նյութեր պահելու ամանները, գինու կարասներն ու այլ կիրառությամբ խիստ բազմազան խեցեղեն իրերն ու առարկաները։ Հասա-*

[1] Б. Н. Аракелян, Гарни, I, 1952, Ереван.

րակ խեցեղենի զարդարման համար առավելապես կիրառվել են փորագրելու, ներճկելու, դրոշմակնիքներով զարդարելու եղանակները։ Պեղումների ժամանակ հայտնաբերված լայնափոր սափորի (№ 1965/71) փորամասի վրայով ձգվում է անոթը բոլորող նեղ, ակոսով արված զարդ, որից ներքև ձողի օգնությամբ դեռևս խեցու թաց վիճակում փորագրված է հայերեն ա տառը հիշեցնող զարդը։ Ինք, շեղ գծերով է զարդարված (№ 1966/144) հետ փռվող շրթով պնակի բեկորը։ Փորագրելուց բացի Դվինի կավագործները հասարակ խեցանոթները զարդարում էին նաև վերադրման, դրոշմակնիքներով զարդարելու տեխնիկայով. Ներճկումով է զարդարված (№ 1966/119) կճուճի բեկորը (նկ. 27բ)։ Վերադիր զարդ ունեցող խեցանոթներից ուշագրավ է ինվ. (№ 1964/266) աղամանը։ Վերջինիս



Նկ. 27. Կավե սափոր և ներճկված անոթի բեկոր

զարդն իրենից ներկայացնում է մարդու դիմակ։ Աղամանները զարդարելու վերադրման այս, ինչպես նաև փորագրելու եղանակը շատ հնից է գալիս, այժմ էլ Հայաստանի գյուղերում տնայնագործ կավագործները աղամանները զարդարում են մարդու վերադիր դիմակով։ Դրոշմումով զարդարված հասարակ խեցեղենի օրինակներից (№ 1968/20) կարմրաներկ փայլեցրած թոնրի կափարիչի բեկորի վրա, կափարիչի բոլորաձև եզրից 2 սմ ներս արված է բուսական զարդ, նման եղանակով զարդարված թոնրի կափարիչի բեկոր ենք գտնում նաև Դվինի հասարակ խեցեղենի հավաքածուներում։ Երկրաչափական զարդանախշով է զարդարված (4×4 սմ քառակուսի դրոշմով) թոնրի շրթի մակերեսը։

Հատուկ ձև ունեն և հաճախ փորագիր զարդեր են կրում ամանների խփերը, իրենից կոնաձև կամ փոռիկաձև բռնակներով (նկ. 28)։ Տնային գործածության խեցեղեն իրերից Դվինում հայտնաբերված է եռոտանու ձև ունեցող օջախի մի ոտքը, վերջինս կարմրաներկ է, փայլեցրած. եռոտանու ոտքի վրա դրոշմված է հյուսվածքի բավականին ուռուցիկ զարդը։ Դվինում հայտնաբերված հասարակ խեցեղենի հավաքածուներում զգալի քանակ են կազմում հասարակ, ան-




Նկ. 28. Կավե խփերի բռնակներ։

զարդ, սրածայր պատրուգաեզով, փոքր շրթերով և նավակաձև ծիթաճրագները (նկ. 29)։ Վերջիններիս նման օրինակներ գտնում ենք Դվինի IX—XIII դարերի խեցեղենի հարուստ հավաքածուներում։ Գառնիի պեղումների միջոցին հայտնաբերված նուրբ պատերով, մանրահատիկ կավից կերտված սափորի բեկորներից ուշագրավ է (№ 1964/356) կարմրաներկ, փայլեցրած կժի բեկորը։ Պակաս ուշագրավ չեն Գառնիում հայտնաբերված կաղապարով պատրաստված խեցանոթների առանձին նմուշները. (№ 1969/58), (№ 1969/282) սափորի բեկորների վրա կաղապարման եղանակով արված է եռաշար շեղանկյունազարդ մոտիվ։ Կաղապարակերտ սափորների նման օրինակներ են հայտնի նաև Անիի և Դվինի հավաքածուներում։ Գառնիի կաղապարի օգնությամբ զարդարված խեցանոթների բեկորները հայտնաբերվել են ամրոցի միջնադարյան շերտերում, X—XI դարերին թվագրվող ջնարակապատ խեցանոթների հետ, որը և հիմք է տալիս վերջինս թվագրելու այդ ժամանակով։ Մեր կարծիքով կաղապարակերտ օրինակները բերված են Դվինից։ Հաճախ են նաև տարբեր չափերի կարասների գտածոները։



Նկ. 29. Կավե ճրագներ։

Խեցեղենը լայն գործածություն ուներ և քաղաքներում ու գյուղաքաղաքներում արտադրվում և վաճառվում էր գնալի չափերով, որով և պետք է բացատրել այդ երևույթի անդ գտնելու փաստը միջնադարյան Հայաստանի իրավունքի նշանավոր հուշարձան՝ Մխիթար Գոշի Դատաստանագրքում։ Այդ դատաստանագրքի «Յաղագս դատաստանաց վաճառոց ամանաց» հոդվածում ասվում է. «Եւ կարաս վաճառեալ եւ գնեալ հաստատեսցի յորժամ լցեալ ողջ դարկեալն պահեսցէ գինի լամին։ Ապա թէ կարծիք բեկման ի թրման է[1] իցէ եւ զգինին կորուսցէ, միմիայն զկտրասն գործողն տացէ, այլ եւ զկէս վնասուն տուգանեսցի։ Ապա թէ ունկարծիս ի բեկմանէ իցէ եւ թաղեալն եղեւ կարծիսն անտուգանք լիցի վաճառողն. այլ եթէ յայտնանէ երկրայնեցի, զամանն միայն վաճառողն տուգանեսցի։ Այդ ըստ այլոց լիցին եւ ի փոքունս, եւ մեծամեծս[2]։

Գառնիի խեցեղենի հավաքածուներում առանձին խումբ են կազմում կարմրաներկ փայլեցրած, զարդարուն կարասները։ Վերջիններս հիմնականում պատրաստվել են աղյուսագույն և վարդագույն կավերից, առանձին օրինակների խեցին ավազախառն է։ Ինչպես հայտնի է կարասներն ամբողջությամբ դուրգի վրա պատրաստելն անհնարին էր. դուրգի վրա պատրաստվում էր մինչև ուսացիկ փորամասը, ապա վերջինիս ձև էր տրվում պատրուլգներով բարձրացնելով։ Կարասների կանթերը պատրաստվում էին առանձին, խեցու թաց վիճակում և ամրացվում շրթից ներքև իջնող մասում։ Կարասների պսակի ստորին մասում,

[1] Հավանաբար թրծմանէ, մի ձեռագրում՝ իթուրծնէ։

[2] Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք, Վաղարշապատ. 1880, էջ 368—369։

շատ հաճախ դեռևս խեցու թաց վիճակում հատուկ ձևով դրոշմվում էին սեպաձև, եռանկյունաձև խորաքանդակ զարդեր։ Կարմրաներկ փայլեցրած կարասների ամենաաչքի ընկնող զարդերն արվում էին գոտու վրա։ Կարասի ամենալայն մասում, իրար զուգահեռ երկու ուռուցիկ գծերով կազմվում էր 1,5—5 սմ լայնություն ունեցող գոտի, որը պտտվում էր ամբողջ կարասի շուրջը և այս գոտու վրա փորաքանդակ գլանների օգնությամբ արվում էին դրոշմազարդեր։ Կարասները գծազարդով, վերադիր զարդով. դրոշմով զարդարվելուց հետո չորացվում էին և նախքան թրծելը կոկիչով ողորկվում, ապա չորացած խեցու վրա թաց լաթով այն փոքր ինչ խոնավացնելով փայլ էին տալիս կոկիչով։ Կարասների ներկումը կատարվում էր գերազանցապես թրծելուց հետո։ Գառնիի զարդարուն կարասների սիպր բազմաթիվ օրինակներ են հայտնաբերվել Անիի և Դվինի պեղումների ժամանակ, որոնց ձևը և զարդամոտիվների նմանությունը կռվան են տալիս ճիշտ թվագրելու Գառնիի զարդարուն կարասները։ Պեղումների ժամանակ երևան բերված Գառնիի զարդարուն կարասները ջարդված են. վերջիններս զարդարման եղանակից ելնելով կարելի է բաժանել երեք հիմնական խմբի. 1. փորագիր զարդով, 2. վերադիր զարդերով և 3. դրոշմազարդ կարասներ։ Փորագիր զարդեր ունեցող կարասների բեկորները դասելով վերջիններիս ջնարակապատ խեցանոթների վաղ նմուշների (X—XI դարեր) հետ հայտնաբերվելու փաստից, ավելի վաղ են երևան եկել և թվագրվում են X—XI դարերով Գառնիի կարմիր փայլեցրած փորագիր զարդ ունեցող կարասի (№ 1968/18, չ. 7×5,2 սմ, խեցու հաստ. 0,8 սմ) վարդակարմիր խեցի ունեցող բեկորի վրա, վերադիր, ոչ բարձր դրված պատրույգից ներքև արված են երկգիծ եռանկյունիներ։ Կարմրաներկ-փայլեցրած փորագիր զարդ կարասի բեկորների (№ 1967/112, չ. 13×9,2 սմ) վրա շրթից անմիջապես ներքև ձողով եզրագծված են երկու, իրար միացված բութանկյուն եռանկյունիներ։ Բութանկյունների մեջ բարակ ծայր ունեցող ձողով արված է փորագիր զարդ։ Փորագիր զարդերով կարմրաներկ փայլեցրած կարասների զգալի քանակությամբ օրինակներ ենք գտնում Դվինի և Անիի կարասների հավաքածուներում, որոնք Գառնիի օրինակների եռանկյունազարդի փոխարեն իրենց վրա կրում են աերևի, բազմանկյան, շեղանկյունաձև և այլ զարդեր (№ 377/7), (№ 123/70 և այլն)։ Հետաքրքրություն է ներկայացնում (№ 1966/31) կարասի բեկորը, որի փորի վրայի նեղ վերադիր գոտուց ներքև կա եռանկյունի զարդ, որը ցածի մասում վերջավորվում է գնդիկով. եռանկյունի զարդի կողքերին սանրի ատամներով արված են մանր եղևնազարդեր։ № 1964/277 օրինակի վրա ձողով կարասի շրթից ներքև տարված են իրարից որոշ հեռավորության վրա երկգիծ աղեղներ, որոնց միջև տրված են նույն աղեղները հակառակ դասավորությամբ։ Գրեթե նույն զարդն է պատկերված № 1968/18 բեկորի վրա, միայն այն տարբերությամբ, որ աղեղազարդի կողքին գծագրված է շեղանկյունի զարդը։

Գառնիի պեղումների ժամանակ հայտնաբերվել են վերադիր զարդեր ունեցող կարասների բեկորներ։ Նման զարդերով կարասների բեկորներ մեծ քանակությամբ գտնվել են Անիում, դրանց զարդերը շատ հաճախ կրկնում են ճարտարապետական հուշարձանների վրա հանդիպող կենդանի կամ գազան պատկերող ռելեֆ քանդակները, Գառնիի պեղումներով հայտնաբերված (№ 2100/76, չ. 6,4×6,3) կարմրաներկ փայլեցրած կարասի բեկորի վրա, վերադրումով պատկերված է ինչ որ գազան. գրեթե նույն ձևի վերադիր զարդ՝ գազանի պատկերումով գտնում ենք Անիի խեցեղենի հավաքածուներում։ Պատկերված գազա-

նի մարմնի վրա արված են շերտավոր բծեր։ Պատկերվածի գազան լինելն ի վերջո հավաստի է դառնում վերջինիս բավականին ռելեֆ թաթերով (նկ. 30բ)։ Գազանը հավանաբար վագր է։ Նկարագրված օրինակը հայտնաբերվել է XI—XII դարերի ջնարակապատ խեցեղենի և XII դարի վրացական դրամների հետ, նույն ժամանակով են թվագրվում Անիի վերադիր զարդերով կարասները, որը և հիմք է տալիս Դվինի օրինակը թվագրելու XI—XII դարերով։



Նկ. 30. Կավե անոթների բեկորներ՝ փորագիր և դրոշմազարդ։

Պեղումներով հայտնաբերված խեցեղենի մեջ զգալի տեղ են գրավում դրոշմազարդ կարասները, որոնք իրենց պատրաստման և զարդարման եղանակներով, զարդանախշերով նման են Հայաստանի միջնադարյան հուշարձանների՝ Դվինի, Անիի, Աներբերդի պեղումներով հայտնաբերված կարասների օրինակներին։ Հայտնաբերված նմուշները նմանության գծեր են դրսևորում Դմանիսիի, Գանձակի, Օրան Կալայի օրինակների հետ, որը արդյունք է ավելի շուտ այդ

քաղաքներում հայ բնակչության, հայ վարպետների առկայության, քանի որ այդ տիպի կարասների արտադրությունը բնորոշ է Հայաստանի համար։ Դրոշմազարդ կարասներն ինչպես հայտնի է գերազանցապես պատրաստվել են դուրգի վրա և զարդարվել խեցու թաց վիճակում բոլորակ կամ գլանաձև դրոշմներով կամ փորագրության եղանակով, ապա փոքր ինչ չորանալուց հետո հղկվել, փայլեցվել են։ Կարասները սովորաբար ներկվում էին թրծելուց հետո։ Գառնիի պեղումների միջոցին հայտնաբերված կարասների վրա հանդիպում են բուսական, երկրաչափական, կենդանիների և այլ մոտիվներ։ Այսպես, (№ 1967/112) կարասի երկու բեկորների վրա կարասի մակերեսին վերադրված հարթ պատրույգի վրա կլոր դրոշմով պատկերված է սաս թերթանի վարդյակի մոտիվը։ Վարդյակի մոտիվով զարդարված օրինակներից ուշագրավ է (№ 1966/112) բեկորը, վերջինիս մակերեսի վրա վերադրված հարթ գոտու վրա, կլոր դրոշմով, իրարից 2 սմ հեռավորության վրա դրոշմված է 10 թերթանի վարդյակի մոտիվը, պսակաթերթերից հինգը տրված են գնդիկների ձևով։ (№ 1967/121, չ. 13×7 սմ) կարասի բեկորի մակերեսի վրա դրված վերադիր 4 սմ տրամագիծ ունեցող գոտու վրա իրարից 4,5 սմ հեռավորության վրա բոլորաձև կնիքով դրոշմված է 16 թերթանի վարդյակի մոտիվը։ (№ 1967/113, չ. 9×6,5) կարասի շրթից ներքև, իրարից 1,5 սմ հեռավորության վրա, շախմատաձև դասավորությամբ կլոր կնիքով դրոշմված է 12 թերթանի վարդյակի երկշարք գոտին։ Քառաթերթ ոճավորված վարդյակների զարդեր են պատկերված (№ 1967/271) բեկորի վրա։ Նման օրինակների թիվը Գառնիում քիչ չէ (նկ. 30)։ Բուսական մոտիվներով զարդարված վերոհիշյալ օրինակները հայտնաբերվել են XI—XII դարերի ջնարակապատ խեցեղենի հետ. վերջինիս մոտիվները նման են Դվինի և Անիի կարասների գոտիների մոտիվներին և թվագրվում են XI—XII դարերով։ Բուսական մոտիվներով օրինակների մեջ հետաքրքիր է 1956 թ. Գառնիի բնակիչ Շ. Մովսիսյանի ձեռք բերված, շատ մեծ չափի, սրածայր հատակով ամբողջական դրոշմազարդ կարասը (տախտ. 14), որի հայտնաբերման տեղը թեև ստույգ հայտնի չէ, սակայն կարասի մոտիվներից, ձևից դատելով այն թերևս կարելի է թվագրել XIV—XV դարերով։ Վերջինս իր վրա ունի երկու շարքով կարասը շրթից 20 սմ ներքև բոլորող գոտեզարդ, որը իրենից ներկայացնում է 12 թերթանի վարդյակի մոտիվը։ Կարասի զարդարումը կատարված է բոլորաձև դրոշմակնիքով։ Բուսական զարդեր ունեցող կարասների օրինակներ են հայտնաբերված նաև Լոռեից։ Գառնիի կարասների գոտիների վրա հանդիպող վարդյակի մոտիվը ամենատարածվածն է. այն հանդիպում է կիրառական արվեստի բոլոր բնագավառների կերտվածքների, մետաղե իրերի, գործվածքներից՝ Անիի պեղումներով հայտնաբերված մանկան զգեստի, գրքերի կազմերի, ճարտարապետական հուշարձանների, խաչքարերի վրա, մանրանկարներում և այլուր։

Զգալի քանակ են կազմում երկրաչափական զարդեր ունեցող դրոշմազարդ կարասների բեկորները։ Հյուսվածքի զարդով են գեղազարդված դրոշմազարդ կարասների (№ 1964/310) և (№ 1967/117) բեկորները, որոնց վրա հորիզոնական գիրքով դրոշմված է երկգծով արված հյուսվածքազարդը։ Կարմրաներկ փայլեցված դրոշմազարդ կարասի (№ 1964/272, չ. 14×6,4 սմ, խեցու հաստ. 1 սմ) մակերեսից փոքր ինչ բարձր դրոշմվածքը վերևից և ներքևից եզերվում է գծերով, որոնց միջև 2,5 սմ տրամագիծ ունեցող դրոշմով արված է երկրաչափական զարդ, որը ոճավորված Տ տառն է հիշեցնում։

Տ տառը հիշեցնող մոտիվով և զարդարված № 1966/143 կարասի կանթը (նկ. 30)։ Ի վերջո Տ-աձև զարդով է գեղազարդված 1968/20 կճուճի կափարիչը. որի մակերեսի վրա, 1,7 տրամագիծ ունեցող դրոշմագլանով արված է հյուսվածքի զարդը։ 1964/310 և 1967/117, կարասների բեկորների վրա հորիզոնական դիրքով դրոշմված է երկշարք հյուսվածքազարդ։

Գառնիի կարմրաներկ փայլեցրած կարասների վրա հանդիպող հյուսվածքազարդը խոշոր տեղ է գրավել ոչ միայն հասարակ խեցանոթների, ջնարակապատ անոթների, հայկական ճարտարապետական հուշարձանների, արվեստի կոթողների մեծ մասի վրա։ Հյուսվածքազարդը տարածված զարդամոտիվով է եղել միջնադարյան հայկական հոյակապ մանրանկարչության մեջ։ Գառնիի հյուսվածքի զարդով կարասները, նրանց հետ միասին գտնված նյութերի շնորհիվ թվագրվում են XII—XIII դարերով։

Գառնիի միջնադարյան խեցեղենի հավաքածուներում որոշ քանակ են կազմում կենդանիներ պատկերող զարդարուն կարասները, վերջիններիս գոտիների բազմաթիվ բեկորները և թոնրի կափարիչների բեկորները։ Կենդանիներ պատկերներով զարդարված կարասների վրա հանդիպող մոտիվները գրեթե կրկնում են Անիի և Դվինի զարդարուն կարասների հիմնական մոտիվները։ Գառնիի օրինակների վրա դրանք շատ հաճախ ամբողջ սյուժե են ներկայացնում։ Գառնիի դրոշմազարդ կարասի (№ 1965/177, չ. 8,4×7 սմ) բեկորի վրա 3,8 սմ տրամագիծ ունեցող դրոշմիչով կարասի գոտու վրա պատկերված են գլուխները հակառակ ուղղությամբ դարձրած երկու այծերի պատկերներ, որոնք իրարից սահմանազատված են սանդղազարդով, որի աջից և ձախից արված են մեծ Տ-աձև զարդեր։ Այծերի մեջքերին և փորատակին արված են մեկական գնդիկներ։ Այծերի պատկերներով դրոշմազարդ այլ բեկորներ ևս գտնվել են (նկ. 31)։ Կարասներից բացի կենդանազարդ դրոշմվածք ունեն նաև թոնրի կափարիչների և այլ անոթների բեկորները։ Այդպիսիներից ուշագրավ է թոնրի (1967/115) կափարիչի բեկորը (չ. 9×7,2 սմ). կափարիչի վրա 4,5 սմ տրամագիծ ունեցող դրոշմակնիքով արված են այծերի ֆիգուրներ. վերջիններս պատկերված են իրար ետևից ընթացող դիրքով, և իրարից սահմանազատված են սանդղաձև զարդով։ Դրոշմումով զարդարված շատ փոքր չափսի կարասի բեկորի վրա (№ 1967/123) նույն մոդելավորում ունեցող դրոշմագլանով արված են գլուխները հակադիր ուղղությամբ դարձրած երկու այծերի պատկերներ, որոնք իրարից բաժանված են այլ մոտիվներով, այս օրինակի վրա որպես բաժանող մոտիվ պատկերված է կենաց անկին։ Գառնիի զարդարուն խեցեղենի վրա հաճախ հանդիպում ենք զարդամոտիվների, որոնք բնորոշ են ֆեոդալների, ինչպես նաև ժողովրդական կենցաղի առանձին կողմերի վերարտադրության տեսակետից։ Հանդիպում են որսի կենդանու հետապնդում պատկերող տեսարաններ. (№ 1963/76, չ. 8,5×7 սմ) կարասի բեկորի վրա 4,2 սմ տրամագիծ ունեցող դրոշմագլանով ներկայացված է եղնիկների վազքը պատկերող զարդամոտիվ, եղնիկը պատկերված է գլուխը հետ շրջած դիրքով, նրան ասես ինչ որ գազան է հետապնդում։ Թեպետ գազանը հստակ չի վերարտադրված, դրոշմվածքից դժվար է գտնել նրա ինչ լինելը։ Եղնիկների որովայնի տակ, նրանց գնչերի մոտ և մեջքերի վրա արված են զանազան ոճավորված բուսական զարդեր։ Գառնիի միջնադարյան զարդարուն խեցեղենի հավաքածուներում, կարմրաներկ փայլեցրած կարասների վրա հանդիպում են նախշեր, որոնք խիստ ոճավորված են և դժվար է գտնել մոտիվների ինչ լինելու մասին։ Կարմրաներկ փայլեցրած

կարասի երկու մեծ բեկորների, 56 սմ երկարությամբ, ձգվող գոտու վրա պատկերված են իրար հետևից ընթացող կենդանիներ և թերևս վերջիններիս հետապնդող գայլեր։

Պատկերված կենդանիները ակներևաբար եղնիկ են. վերջիններիս պատկերներից վերև և ներքև, գոտու վերին եզրին մոտ, հորիզոնական ուղղությամբ նրա ամբողջ երկայնքով ձգվում է երկգծով տարված և նրա մեջ առնված, անընդհատ կրկնվող քառանկյունու նախշը. կենդանիների մեջքերին արված են բուսական ոճավորված գեղեցիկ զարդեր։ Կենդանիներից մեկի հետևի ոտքերի




Նկ. 31. Կարմիր փայլեցրած կարասի գոտի, այծերի դրոշմազարդ պատկերներով։

արանքում պատկերված է կենաց տնկի, դնչի մոտ և փորատակին՝ ոճավորված գեղեցիկ պատկերներ։ Այս մոտիվը կրկնվում է ամբողջ գոտու վրա (նկ. 32)։

Գառնիի հասարակ խեցեղենի օրինակների վրա հանդիպում է նաև ձի պատկերող մոտիվը։ Ինվ. 76ա-գ—1949. գոտու վրա պատկերված են այծ և ձի, սրանց փորատակին և մեջքից վերև զանազան բուսական ոճավորված զարդեր։

Կենդանու, թերևս ձիու մոտիվով է զարդարված մի այլ բեկորի գոտին։ Պատկերված կենդանու մեջքի վրա, գնչի, փորի և պոչի տակ արված են երկուական շրջաններ. պոչի վրա արված շրջանից վերև հաստ եզրագծով պատկերված է թռչուն, ակներևաբար բազե, որն ասես կտուցը մոտեցրել է կենդանու մեջքին։

Դրոշմազարդ կարասներից ուշագրավ է նաև № 1963/92 կարասի բեկորը (չ. 7,2×6 սմ). գոտու վրա պատկերված են դեմառդեմ կանգնած երկու փարթամիրան այծեր, որոնցից ձախակողմյանը լրիվ չի պահպանվել։ Դեմառդեմ կանգնած այծերի միջև ռելեֆ կերպով իջեցված է ուղղահայց գծերով պարփակ-

վող շեղանկյունիներ, որոնց մեջ արված են սեկական գնդիկներ։ Գառնիի պեղումներով երևան բերված դրոշմազարդ կարասներից (№ 1963/94), բեկորի վրա պատկերված է այծի մոտիվը, որովայնի տակ ուլը, այծի դիմաց վարդյակ։ Այլ մոտիվների զուգակցությամբ կարասի բեկորներից ուշագրավ է № 1969/5 բեկորը (չ. 9×5,8 սմ), ուր պատկերված է այծ կամ այծյամ, մեջքին թռչուն, հավանաբար բազե, այծյամի դնչի մոտ ռանդդազարդն է։ Այս մոտիվը հանդիպում






Նկ. 32. Կարմիր տայլեցրած կարասի դրոշմազարդ գոտու բեկոր՝ գազանները հետապնդում են եղնիկներին։

է Անիի և Դվինի օրինակների վրա. կարծում ենք, որ վարպետներն ընդօրինակել են այդ մոտիվները. վերջիններիս դրոշմակնիքները ձեռք են բերվել Դվինից, կամ Դվինից Գառնի փոխադրված արհեստավորի աշխատանք են։ Այծի, այծյամի մեջքին նստած թռչնի, հավանաբար բազեի մոտիվը հանդիպում է ոչ միայն Գառնիի, այլև Դվինի և Անիի խեցեղենի օրինակների վրա։ Ակներև է այն, որ կարասների, ինչպես և արվեստի այլ ստեղծագործությունների վրա վերադրված լույսի մոտիվը որսի, որսորդության տեսարան է պատկերում։

Այծի և այլ զարդամոտիվների հանդիպում ենք նաև դրոշմումով զարդարված ափսեների վրա։ Գառնիի նրբախեցի ափսեներից մեկի բեկորի վրա (չ. 8,2×4 սմ) նրբորեն դրոշմված են դեմառդեմ կանգնած, իրարից սանդղազարդով սահմանազատված երկու այծերի ֆիգուրները, որոնք աչքի են ընկնում պատկերման կատարելությամբ։ Գոտու աջ մասում պատկերված այծը սահմանազատված է կենաց ծառով։ Անհետաքրքիր չէ բարակ պատերով, փոքր չափի մի այլ (№ 1964/304, Գ. 50, հաստ. 0,4 սմ) խեցանոթի բեկորը. վերջինիս դրոշմազարդ գոտու վրա պատկերված է իրար հետևից ընթացող ձիերի վազքի տեսարան. բեկորի վրա ձիերի մոտիվներից միայն մեկինն է լրիվ պահպանվել։ Ձիու պարանոցի տակ թեք դիրքով արված են երեք գնդիկներ, ձին ներկայացված է ցատկելու տեսարանով։

Գառնիի խեցեղենի հավաքածուներում վերջինս առայժմ եզակի է. Անիի և Դվինի խեցեղենի հավաքածուներում նման մոտիվով դրոշմազարդ ափսեների օրինակների չենք հանդիպում։ Այս օրինակի գոյությունը հիմք է տալիս եզրակացնելու, որ դրոշմելու տեխնիկան լայնորեն կիրառվել է ոչ միայն կարասների, սնդիկամանների, քուպերի և խեցանոթների կափարիչները այլև փոքր չափի խեցանոթները, ափսեները զարդարելիս։

Բազմաստղուժն դրոշմվածք ունի մի կարասի № 1964/276 բեկորը (չ. 10,5×3 սմ) կարասի մակերեսին դրված փոքր իսկ վերադիր գոտու վրա պատկերված է ձիու ֆիգուրը պոչը վերև բարձրացրած, մեջքին բերած դիրքով։ Ձիու մեջքին պատկերված է թռչուն, ամենայն հավանականությամբ բազե, իսկ փորի տակ եռանկյունաձև դասավորությամբ երեք օղակաձև նախշեր. նույնը արված է ձիու բաշի տակ և դնչի մոտ։ Բեկորից երևում է, որ երկրորդ պլանում ևս պատկերված է եղել ձի, որի միայն պոչն է պահպանվել բեկորի վրա։ Պոչի վրա պատկերված է նստած թռչուն։ Այս բեկորի վրա հանդիպող թռչնի մոտիվը ի տարբերություն այլ օրինակների թռչունը պատկերված է ոչ թե կենդանու մեջքի վրա, գլխին մոտ, այլ ուղղակի պոչի մոտ արված օղակի վրա։ Ձիեր պատկերող գոտիներով կարասների բեկորներից ուշագրավ է մի կարասի (№ 1964/275) բեկորը, որի վրա 3,5 սմ տրամագիծ ունեցող դրոշմադրոշմով սխեմատիկ կերպով պատկերված են երկու ձիերի ֆիգուրներ, ձիերի միջև լեցուն սկուտեղ է պատկերված։ Աջ կողմի ձիու մեջքի վրա արված է երկու օղակաձև նախշեր ձախակողմյանի մեջքի վրա և փորի տակին եռանկյուն դասավորությամբ երեք օղակաձև պտտկերներ։ (Նկ. 33բ)։ Անիի պեղումների միջցից երևան բերված կարասների գոտիների վրա ևս հանդիպում են ձիերի ֆիգուրներ. այսպես № 1963/113 օրինակի վրա։ Իրար հեաևից ընթացող ուղտերի (կարավան) մոտիվն է պատկերված № 2100/115 կարասի գոտու բեկորի վրա։

Գառնիի խեցեղենի հավաքածուներում կենդանիներ պատկերող մոտիվներով կարասների ֆրագմենտար օրինակներից բացի հանդիպում են նաև գազանների պատկերով դրոշմազարդ կարասների բեկորներ։ Մի կարասի № 1964/286 բեկորի զարդագոտու վրա պատկերված են դեմառդեմ, պրոֆիլ դիրքով կանգնած գազանների, ակներևաբար առյուծների կամ վագրերի ֆիգուրներ, որոնցից միայն մեկինն է լրիվ պահպանվել. այս բեկորի վրա պատկերվածը կրկնում է Հայաստանի Պետ. պատմական թանգարանի ֆոնդերում պահպանվող Գոշավանքից հայտնաբերված կարասի բեկորի վրա հանդիպող մոտիվները։ Մի այլ բեկորի վրա սանս վագր է պատկերված (Նկ. 33դ)։

Գառնիի զարդարուն կարասների վրա ի վերջո հանդիպում են նաև պարող մարդկանց տեսարան պատկերող օրինակներ, որոնք այնքան առատորեն հանդիպում են, մանավանդ Անիի և Դվինի զարդարուն կարմրաներկ փայլեցրած կարասների վրա։ № 1967/120 կարասի զարդագոտու վրա առաջին պլանում պատկերված են այծ, մեջքին նստած թռչուն, դարձյալ այծ, և ապա խիստ ոճավորումով երեք պարող մարդկանց ֆիգուրներ։ Զարդագոտու վրա պատկերված պարող մարդկանց սխեմատիկ ֆիգուրները հիշեցնում են միջնադարյան հայկական դորգերի վրա ոճավորումով պատկերված մարդկանց ֆիգուրները։

Ուշագրավ է նաև դրոշմազարդ կափարիչի (№ 1966/125) բեկորը, որի վրա պատկերված են պարող մարդկանց ֆիգուրներ բուսական և երկրաչափական զարդերի զուգակցությամբ։ № 1964/274 (չ. 9,5×8 սմ) բեկորի զարդագոտու վրա առաջին պլանում պատկերված են պարող մարդկանց ֆիգուրներ, ապա կենաց ծառի մոտիվը և սիրամարգ, որը սահմանազատված է կենաց ծառի մոտիվով (Նկ. 33դ)։ Սիրամարգի մոտիվը հանդիպում է նաև Գանձակի զարդարուն կարասների վրա[1]։ Պարող մարդկանց մոտիվը պատկերող օրինակներ են հայտ-

[1] Левиатов, Керамика старой Ганджи, Баку, стр. 10.

ու Դվինի զարդարուն խեցեղենի հավաքածուներում. № 1794 275 Դ. 1946-ի դրոշմազարդ գոտու վրա պատկերված են երեք պարող մարդիկ սիրամարգի, այծի և կենաց ծառի զուգակցությամբ։ Գառնիի պեղումների ժամանակ հայտնաբերված խեցեղենի հավաքածուներում հանդիպում է նաև պարող մարդկանց զարդանախշով կարասներ վարդյակի մոտիվի զուգակցությամբ. ինվ. 271. Գ. 1950 (չ. 9/8,2 սմ) բեկորի վրա դրոշմված է բացվող վարդյակը, որից ձախ ճամփորումով պատկերված են երկու պարող մարդկանց ֆիգուրները։



Նկ. 33. Գառնիից փայլեցրած կարասի դրոշմազարդ բեկորներ կենդանիների, գազանների և թռչունների պատկերներով։

Գառնիի պեղումներում երևան բերված դրոշմազարդ խեցեղենի վրա հանդիպող մոտիվները IX—XIII դարերի հայկական զարդարվեստի կոթողների վրա արված մոտիվներից են. վերջիններս հանդիպում ենք Անիի, Դվինի, Ամբերդի, Գառնիի, ինչպես նաև Կարմիր բլուրի վերին միջնադարյան շերտերի պեղումներով հայտնաբերված կարասների և նրանց բեկորների վրա. այդ մոտիվների մի զգալի մասը հանդիպում ենք Վրաստանի և Ադրբեջանի, Դմանիսիի, Գանձակի, Օրան-Կալայի—պեղումներում երևան բերված զարդարուն խեցեղենի

1 Տե՛ս նկարը Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Երևան, 1952, էջ 195։

օրինակների վրա։ Զարդամոտիվների և խեցանոթների ձևի այնքան նմանությունը արդյունք է այն բանի, որ մանավանդ Դմանիսիում և Գանձակում եղել է հայ բնակչության ստվար զանգված, արհեստավորական խավի առկայությամբ։ Չի բացառվում և այն, որ անդրկովկասյան ժողովուրդների միջև ժամանակի մրշակութային շփումներն ու փոխանակային հարաբերությունները կարող էին բերել այդ ժողովուրդների կողմից առանձին զարդամոտիվների ընդօրինակմանը, յուրացմանը։ Գառնիի զարդարուն խեցեղենի մեջ թեև սակավ, հանդիպում են նաև վերադիր նախշեր ունեցող օրինակներ։ Վերադրման եղանակով զարդարված խեցանոթների, մասնավորապես առատորեն հանդիպում ենք Անիի խեցեղենի հավաքածուներում, ընդ որում այս եղանակով են զարդարված ոչ միայն Անիի կարասների մի քանի օրինակներ, այլև հախճապակու, անգամ սնդկամանների առանձին օրինակները։ Վերադիր զարդով հախճապակե անոթների մեծ թվով օրինակներ են հայտնի Դվինի խեցեղենի հավաքածուներում[1]։

Գառնիի պեղումների միջոցին առայժմ հայտնաբերվել են միայն առանձին օրինակներ, որոնք ինքնին հետաքրքիր են և հավաստում են այդ եղանակով խեցեղեն առանձին անոթների պատրաստման փաստը նաև Գառնիում։ Վերադիր զարդ ունեցող խեցանոթների բեկորներից ուշագրավ է 1951 թ. պեղումների միջոցին Գառնիի ամրոցի մուտքից աջ, առաջին աշտարակի հետևում հայտնաբերված (№ 1965/210) կարմրաներկ, փայլեցրած խեցանոթի բեկորը։ Վերջինիս վրա վերադրման եղանակով, ռելեֆ կերպով վերարտադրված է ոչխարը պատկերող ֆիգուրան, վերջինիս առջևի ոտքերը բեկորի վրա չեն պահպանվել (նկ. 33ե)։ Վերադիր, ձևավոր կանթ ունեցող կարասների թվում հետաքրքիր է 1965/191, մի դրոշմազարդ կարասի (№ 1965/191) կանթը (չ. 6,8×5 սմ)։ Կանթի վրա վերադրումով պատկերված է առյուծի գլուխը։ Պարզ երևում են գազանի ականջներն ու դնչին սեղմած թաթերը։

Ի վերջո Գառնիի խեցեղենի հավաքածուներում հանդիպում են նաև հայերեն արձանագրություն ունեցող օրինակներ, (№ 1964/265) կարասի բեկոր, որի վրա փորագրված է ՄՇՈ... բառը (նկ. 34)։ Կան և գեղեցիկ ձևավորումով և կարմիր փայլեցրած ծխամորճի 6 օրինակներ (նկ. 35)։

Գառնիի զարդարուն, մասնավորապես դրոշմազարդ խեցեղենի քննությունը ցույց է տալիս, որ X—XIII դարերում Գառնին ունեցել է ոչ մեծ չափի զարդարուն խեցեղենի տեղական արտադրություն, որը գերազանցապես ծառայել է տեղի պահանջմունքներին բավարարություն տալու համար։ Գառնիում, որ այնքան մոտ էր գտնվում, միջնադարյան Հայաստանի արհեստի, արտադրության և առևտրի խոշորագույն կենտրոն Դվինին, մեծ չափով նկատելի է այն զարդամոտիվների ընդօրինակումը, որը բնորոշ է Դվինի և Անիի խեցեղենին։ Գառնիի դրոշմազարդ խեցեղենը, ելնելով վերջինիս հայտնաբերման տեղից, նյութից և զարդամոտիվներից թվագրվում է X—XIII դարերով։

**Ջնարակած խեցեղեն.** Գառնիի պեղումների միջոցին երևան բերված խեցեղենի մեջ էական տեղ է գրավում ջնարակով պատած խեցեղենը։

Հնագիտական գրականության մեջ խեցեղենի այս խումբը հայտնի է եղել ջնարակապատ խեցեղեն անունով, թեև ջնարակ բառը հայերենում բոլորովին չի իմաստավորվում խեցանոթի մետաղական զանազան օքսիդներով գունավորված լինելը և խեցին պատող նյութի բուն իմաստը։ Հ. Աճառյանի Արմատական

---

[1] Կ. Ղաֆադարյան. Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 224։

բառարանում ջնարակ բառի տակ կարդում ենք. «սանդարակ խեժբ. sandaraque Գաղիան. բժշ. մի տեսակ եղինջ Գաղիան (ըստ Հրուս. ՊՐ (1559)[1]։ Միջնադարյան գրականության մեջ ջնարակած անոթները կոչված են ապիկած։

Դվինի միջնադարյան խեցեղենի հավաքածուներում մեծ տեղ է գրավում ջնարակով պատած խեցեղենը. պեղումների միջոցին երևան են եկել ափսեների, ծիթաճրագների, պնակների, քրեղանների այլ խեցանոթների բեկորներ և



Նկ. 34. Կավե անոթի բեկոր, վրան փորագրված Մղու



Նկ. 35. Ծխամորճներ, կավ, կարմիր փայլեցրած։

ամբողջական նմուշներ, որոնք պատած են միագույն և բազմագույն ջնարակով։ Պեղումների միջոցին երևան բերված ջնարակած խեցանոթների վաղ օրինակները կրկնում են Դվինի համապատասխան նմուշների զարդերը իրենց ձևով ու խեցիով, նույնպես սերտորեն առնչվում են Դվինի խեցեղենի հետ. վերջիններս թվագրվում են X—XI դարերով։ Գառնիի խեցեղենի հավաքածուներում հանդիպում են նաև Զվարթնոցի խեցանոթների վաղ նմուշների, թերևս IX դարի անոթների ավելի նմուշներ, որոնք շատ քիչ են։

Ժամանակագրական տեսակետից, ջնարակած խեցեղենի առավել վաղ նմուշները վերաբերվում են IX—X դարերին և ամենայն հավանականությամբ Դվինի արտադրանք են հանդիսանում։ Խեցեղենի այս խումբը զարդարված է խեցին սպիտակ կավե զանգվածով՝ անգոբով պատելու, սպիտակ կավե զանգվածը (անգոբը) հեռացնելու, փորագրելու (գրաֆիրովկա) և այլ եղանակներով։ Ժամանակագրական ամենավաղ օրինակները անգոբապատ նմուշներ են։ Խեցանոթը անգոբով պատում էին խեցու մակերեսի անհարթությունները վերացնելու, այն հարթելու, ինչպես նաև ջնարակի համար պահանջվող ֆոնի նպատակով։ Անգոբը հիմնականում արվում է գեղագիտական զարդապատճառներով։ Վերջինս տալիս ջնարակը ոչ միայն պարզ, այլ վառ երանգներ, գույներ էր ստանում։ Անգոբապատ խեցանոթները մեծ մասամբ պատել են թափանցիկ ջնարակով։ Վերջիններս անգոբով պատվելուց հետո ուղղակի ընկղմում էին ջնարակի մեջ, կամ բսում ջնարակ, փոքր ինչ չորանալուց հետո թրծում։ Այս անգոբապատ խեցանոթները գերազանցապես միագույն են։ Այսպես, մի պնակի (№ 1967/155,

[1] Հ. Աճառյան, Արմատական բառարան, հատ. Ե, էջ 1222։

չ. 17×10 սմ) բեկորը ներսից պատած է կաթնա-դեղնավուն գույնի ջնարակով. պնակի ֆոնի վրա երկու տեղ կանաչ ջնարակի ցայտքեր կան։ Վերջինիս վրա նշմարվում են եռոտանու ոտքերի տեղերը. Նկարագրված օրինակը հիշեցնում է Դվինի X—XI դարերի նմուշները։ Կանաչ գույնի ջնարակով է պատած № 1964/343 պնակի բեկորը, ներսից մակերեսը ծածկված է կանաչ գույնի ջնարակով, դրսից միայն եզրամասն է պատած հաստ շերտով կանաչ գույնի ջնարակով։ Նկարագրված օրինակը օգտագործվել է նաև հետագայում. ջարդվելուց հետո. վերջինիս ջարդված մասերն իրար միացնելու համար արել են անցքեր և ապա մետաղե լարով ամրացրել։ Գառնիի պեղումների միջոցին հայտնաբերվել են խեցանոթների նմուշներ, որոնք ջնարակի գույնով և խեցանոթի ձևով սերտորեն աղերսվում են Դվինի ջնարակած խեցանոթների վաղ օրինակների հետ։ Բերենք այդ նմուշներից մեկի (№ 1964/348) պնակի բեկորի նկարագիրը։ Պնակը պատած է անգոբով, ապա վերջինիս վրա քսված է մուգ դեղնավուն ջնարակ։

Բեկորը զարդարված է փորագրությամբ (դրաֆիրովկա)։ Պնակի շրթի դրսից և ներսից դեռևս խեցու թաց վիճակում արված է իրարից որոշ հեռավորության վրա պնակը շուրջանակի բոլորող գոտի։ Փորագիր տեղերում, անգոբը հեռացված է և ջնարակը ուղղակի խեցու վրա, հաստ շերտով է նստած, ուստի շագանակագույն երանգ է ստացել։

Փորագրելու եղանակով վերադիր զարդի զուգակցությամբ Դվինի և Անիի նմանօրինակ նմուշները հիշեցնող խեցանոթներից ուշագրավ է № 1964/349 պնակի շրթնամասի բեկորը։ Պնակի շրթին մոտ արված են շուրթը բոլորող երկու գծեր, ուր ջնարակը քերված անգոբի տեղում հաստ շերտով նստած լինելու պատճառով սև է երևում։ Նույն գծազարդն է արված նաև պնակի հատակին մոտ. վերջինիս ֆոնը կանաչավուն է։ Դրսից պնակը ջնարակով է պատվել մինչև հատակը, այն դրսից ունի վերադիր զարդ, զարդարման եղանակ, որը բնորոշ է գերազանցապես Անիի և Դվինի հախճապակու օրինակներին։ Գառնիի այս խեցանոթի բեկորի վրա արված է կոճակաձև վերադիր զարդ. այն բաժանված է չորս մասի և յուրաքանչյուր հատվածում արված է մի կետ։ Վերադիր զարդը հիշեցնում է վարդյակի ոճավորված մոտիվը։

Գառնիի միջնադարյան շերտերի պեղումներով երևան բերված խեցեղենի ամենավաղ օրինակները, դատելով աորնթեր նյութից, վերաբերում են ամենաուշը IX դարին։ Վաղ նմուշներին բնորոշ են միագույն զարգերը, խեցանոթների, խեցեղեն կերավածքների շրթերի դեպի դուրս խիստ փռվածությունը, գույների յուրահատուկ զուգորդումը, ինչպես նաև տեխնոլոգիական այլ առանձնահատկություններ, որոնք բնորոշ չեն, ինչպես Գառնիի XIV—XV դարերի, այնպես էլ Դվինի IX—XIII դարերի ջնարակած խեցեղենի համար։ Գառնիի ջնարակած խեցեղենի վաղ նմուշները դեռևս շատ չեն և հայտնաբերվածը դեռևս հիմք չի տալիս խոսելու Գառնիում IX—X դարերում խեցեղենի սեփական արտադրության մասին, որն ըստ երևույթին գոյություն է ունեցել XII—XV դարերում։ Գառնիի ջնարակած նմուշների վաղ օրինակներից մի քանիսը ձևով, և զարդամոտիվներով ուղղակի նմանություն են երևան բերում Դվինի պեղումների ժամանակ հայտնաբերված առանձին նմուշների հետ. այսպես, ջնարակով պատած մի պնակի (№ 1963/194) բեկորի դեղնա-մոխրավուն ֆոնի վրա վերջնարակման եղանակով արված են բուսական զարդանախշերի եզրագծերը. պնակի շրթին մոտ աղեղնաձև զարդն է. վերջինս




Տախտակ III, Ջնարակած պնակներ, Թերի, XII—XIII դարեր։

տրված է կանաչ գույնի ջնարակով: Հեռավոր կերպով շուշանի զարդամոտիվը հիշեցնող եռաթերթ բուսական նախշի թերթերն արված են մուգ դեղին երանգ ունեցող ջնարակով: Պնակի վրա, ներսից պատկերված է նաև կանաչ գույնի ջնարակով եզրագծվող փոքր շրջաններ, որոնց շուրջը արված են մուգ շագանակագույն ջնարակով կետեր: Գառնիի խեցեղենի վաղ օրինակներից է ջնարակած պնակի (№ 1963/694) բեկորը (հատակի մասն է). պնակը հարթ հատակով է և ջնարակով է պատած միայն ներսից: Պնակի հատակի վրա կապույտ գույնի ջնարակով զարդարված մակերեսը բաժանված է քառակուսիների, որոնց մեջ շախմատաձև դասավորությամբ արված է նետասլաքի նմանվող ոճավորված, գծագիր զարդը հիշեցնող նախշը: Պնակի պահպանված բեկորը մեծ չէ. (10×7,5 սմ) խեցին աղյուսակարմիր է, մանրահատիկ: Գառնիի ջնարակով պատած այս վաղ օրինակը իր զարդամոտիվներով հիշեցնում է Դվին քաղաքի կենտրոնական թաղում 1938—1939 թթ. պեղումների ժամանակ հայտնաբերված բազմագույն բեկորի օրինակը[1]: Դվինի օրինակը ի տարբերություն նկարագրվածի գրեթե ամբողջական է, ֆոնը վարդագույն: Դվինի այս օրինակի հատակի վրա քառակուսիների բաժանումն ի տարբերություն Գառնիի օրինակի կատարված է կանաչ գույնի ջնարակով: Ինչպես Գառնիի, այնպես էլ Դվինի օրինակի վրա, քառակուսիների մեջ մեջընդմեջ արված են նետասլաք հիշեցնող զարդեր: Դվինում հայտնաբերվել են Գառնիի նկարագրված նմուշի տիպի և այլ օրինակներ, նաև Կաթողիկե եկեղեցու շրջապատում, միջնաբերդի ստորին շերտի պեղումների ժամանակ, որոնք Կ. Ղաֆադարյանը իրավամբ համարում է ջնարակած խեցանոթների վաղագույն նմուշները և թվագրում IX դարով[2]: Ճիշտ է, թեև վերևում նկարագրված տիպի խեցանոթներ հայտնաբերվել են նաև Զվարթնոցում[3], սակայն, Զվարթնոցի օրինակներն ինչպես ասվել է, ավելի մեծ չափերի խեցանոթներ են, փռված ափսեներ և ջնարակի այլ գույներով են հակադրվում, որոնք հատուկ չեն Դվինի օրինակներին, Գառնիի նկարագրված նմուշին: Զվարթնոցի նմուշները հատկանշվում են վարդագույն և դեղնա-սպիտակավուն ֆոնի (անգոբի) վրա բաց կանաչ, դեղին և շագանակագույն երանգ ունեցող ջնարակով բուսական զարդամոտիվների դերակշռությամբ: Այսպես, Զվարթնոցի բազմագույն ջնարակով զարդարուն ափսեն (թերի) ի տարբերություն Դվինի ավելի վաղ երանգ ունեցող ջնարակած օրինակների, ներսից օվալաձև կենտրոնական գոտին քառատված է հյուսվածքի նրբին զարդամոտիվով, վերջինս արված է, ինչպես և բուսական զարդերը, ուղղակի անգոբի վրա: Կենտրոնական օվալաձև գոտու չորս հատվածներում պատկերված քառապսակաթերթ զարդերը կանաչ գույնով գունավորվելուց բացի, յուրաքանչյուր պսակաթերթ շագանակագույն ջնարակով եզրագծված է կետազարդերով: Զվարթնոցի այս օրինակը առայժմ չի հանդիպում ինչպես Դվինի այնպես էլ Գառնիի հավաքածուներում: Զվարթնոցի ջնարակած խեցանոթների այլ նմուշներ հեռավոր կերպով հիշեցնում են, Դվինի նշանակալից թվով և Գառնիի սակավաքանակ առանձին օրինակները: Զվարթնոցի բաց անգոբի վրա արած գույնզգույն նկարներով զարդարված օրինակներն են[4] հիշեցնում Գառնիում գտնված պնակի (№ 1963/734) շրթնամասի բեկորը: Բեկորի խեցին վարդակարմիր է: Պնակի դեղնա-մոխրա-

---

1 Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 210:
2 Նույն տեղում, էջ 209:
3 Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում, I, էջ 234:
4 Նույն տեղում, էջ 209:

գույն ֆոնի վրա շագանակագույն ջնարակով արված է եռապսակաթերթ զարդի կոնտուրները, պսակաթերթերը գունավորված են դեղնավուն ջնարակի մեծ ցայտքերով։ Խիստ եռ փռված շրթին մոտ կանաչ գույնի ջնարակով արված է խիստ ոճավորված բուսական զարդ, որի մեջ դարձյալ մուգ դեղին գույնով երանգավորել են զարդը։ Պնակը դրսից ջնարակով չի պատվել։ Վերևում բերված Դվինի, Գառնիի և Ջվարթնոցի խեցեղենի վաղ նմուշների առանձին օրինակների նմանությունը և Ջվարթնոցի առանձին օրինակների հեռավոր նմանությունը տեղական յուրահատկություններն է մատնանշում և կասկած չի հարուցում, որ ջնարակած վաղ խեցանոթներ արտադրվել են նշված երեք կենտրոններում էլ հավասարապես։ Պեղումների միջոցին հայտնաբերված նմուշները, վերջիններիս բաղդատումը Դվինի և Գառնիի վաղ նմուշների հետ հիմք է տալիս եզրակացնելու, որ Ջվարթնոցում հայտնաբերված օրինակները տեղական են և ոչ թե բերված են Դվինից, ինչպես սխալ կերպով կարծում է Բ. Շելկովնիկովը[1]։ Բ. Առաքելյանը, չբաժանելով Շելկովնիկովի կարծիքը գրում է. «Ջվարթնոցի խեցեղենը, սակայն շատ ինքնատիպ է... որպիսի և ոչ մի օրինակ չի գտնվել Դվինում, կարելի է կարծել, որ միջին դարերում կրկին քաղաք դարձող Վաղարշապատը նույնպես կարող է խեցեղենի իր սեփական արտադրությունը ունենալ, հակառակ դեպքում պետք էր ենթադրել, թե տվյալ խեցեղենը բերված է ինչ որ անհայտ կենտրոնից»[2]։ Գառնիում հայտնաբերված վաղ նմուշները հաստատում են նմանօրինակ խեցանոթների երեք կենտրոնների առկայությունը։ Խեցեղենի մասնագետները վերջիններս IX դարով թվագրելով ելակետ են ունենում այն, որ այդ դարից վաղ նմուշներ առայժմ անհայտ են։

Միջին դարերում վերստին կյանքի կոչված Վաղարշապատը հնարավոր է, ունեցել է խեցեղենի սեփական արտադրություն, որի XI—XIII դարերի նմուշները թեև առայժմ խիստ սակավ են, սակայն հիմք են տալիս ենթադրելու այդ ժամանակի խեցեղենի առկայության մասին Վաղարշապատում։

Գառնիի տեղական խեցեղենի միագույն նմուշներից ուշագրավ է աղաթասի բեկորը, № 1967/87, որը պատած է փիրուզագույն ջնարակով։ Ուշագրավ է ջնարակած սափորի բեկորը, (№ 1965/5) որի դեպի փորը գնացող մասը նիստեր ունի։ Բեկորից երևում է, որ սափորը դրսից ծածկված է եղել կանաչ գույնի ջնարակով։ Միագույն ջնարակած նմուշներից հարթ հատակով, սուր քթով ճիթաճրագը (№ 1965/179) պատած է կանաչ գույնի ջնարակով։ Նյութից ելնելով նկարագրված օրինակները կարելի է թվագրել X—XI դարերով։ Գառնիի տեղական խեցեղենի մեջ առանձին խումբ են կազմում միաժամանակ տեխնոլոգիական երկու եղանակների գործադրմամբ զարդարված խեցանոթները։ Հայտնի է, որ անոթի վրա փորագրումն արվում է նախքան վերջինիս ջնարակով պատելը և թրծելը։ Գառնիի (№ 1967/152) պնակի բեկորի (7,4 սմ) վրա փորագրված է երկրաչափական զարդ՝ եռանկյուն երկդիծ ֆիգուրա, ապա պատվել է շագանակագույն ջնարակով։ Աորնթեր նյութը հիմք է տալիս այն թվագրելու X—XI դարերով։

Փորագրելու (գրավիրովկայի) տեխնիկայով զարդարված Գառնիի օրինակներից հետաքրքիր են (№ 1965/174) պնակի բեկորները (8 բեկոր)։ Պահպանված պնակի շրթնամասն է։

---

[1] Б. А. Шелковников, Керамика и стекло из расскопок Двина. Труды Госуд. Исторического музея Армении, том 4, стр. 28.

[2] Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում, էջ 234։

Փորագրելու եղանակով պնակի մակերեսին արված է հյուսվածքի գեղեցիկ մոտիվը. այն պատած է մուգ երկնագույն ջնարակով։ Պնակի վրա փորագրված մասերում ջնարակը հաստ շերտով է նստել և նրբերանգել այն։ Բեկորից երևում է, որ դրսից պնակի կեսը ջնարակով է պատած, վերջինիս ֆոնը կաթնավուն է. իրարից որոշ հեռավորության վրա ուղղահայաց իջնող գծեր են տարված։ X—XII դարերով թվագրվող փորագիր զարդ ունեցող ջնարակած խեցանոթների (վարպետի նշանով օրինակներից) ուշագրավ է № 1965—173 պնակի բեկորը (հատակը)։ Փորագրելու տեխնիկայով պնակի հատակի վրա արված և լրացված զարդանախշերի կոնտուրները ապա պնակը ներսից պատվել է երկնագույն ջնարակով. պնակի հատակին վարպետի նշան կա։

Պեղումների միջոցին երևան բերված խեցեղենի մեջ մեծ քանակ է կազմում այն խեցեղենը, որը գեղազարդված է անգոբը հեռացնելու, փորագրելու (դրավիրովկայի) տեխնիկայով։ Խեցեղենի այս խումբը խիստ նմանության եզեր է դրսևորում Դվինում հայտնաբերված խեցեղենի հետ։ Նմանություններ առկա է ո՛չ միայն ձևի, այլ նաև զարդամոտիվների, ջնարակի գույների հար և նման ձևերը գործադրելու մեջ։ Դվինի XI—XIII դարերի ջնարակապատ խեցեղենը հիշեցնող Դմանիսի հավաքածուի այս խումբը ենելով համանման զարդամոտիվներից, խեցանոթների ձևի նմանությունից թվագրվում է XI—XIII դարերով։ Նկատենք, որ ինչպես Դվինի, այնպես էլ Անիի խեցեղենի հավաքածուներում հանդիպում են ջնարակապատ նմուշների բեկորներ, որոնց վրա պահպանվել են անցքեր, անդամ կարի մնացորդ, որը ծառայել է պնակի ջարդված բեկորներն ամրացնելու համար. հետաքրքրական երևույթ, որը բացատրվում է ամենայն հավանականությամբ ջարդված անոթը նորոգելու և գործածելի դարձնելու, ինչպես նաև իրեն զարդարանք օգտագործելու նպատակով։ Ի վերջո նորոգման նպատակով կամերով ամրացված խեցանոթների բեկորներ գտնվեր Դմանիսում, մասամբ կապված է այդ անոթի ամանեղենի Դմանիսում մասսայական գործածության մեջ չլինելու, թանկարժեք սպասեղեն համարվելու հետ։[1] Համառոտակի անդրադառնանք փորագիր խեցեղենին, ընդելով ամենաբնորոշներից մի քանիսի նկարագրերը։ Նշանակալից քանակ են կազմում փորագիր, անգոբը հեռացված և միագույն ջնարակով ծածկված խեցանոթների օրինակները։ Ինվ. 1968/14. ջնարակած պնակի բեկոր հաստ խեցիով (չ. 10×4 սմ)։ Վերջինիս վրա (ներսից) փորագրելու և անգոբը հեռացնելու տեխնիկայով կլոր կողերով սուր անկյուն եռանկյուն զարդն է գծագրված, թերևս պսակաթերթ և այդ սրա մեջ անգոբը հեռացնելու տեխնիկայով բուսական զարդ։ Պնակը ամբողջովին պատած է մուգ դանոաչ գույնի ջնարակով, գծագիր եզրագծերի և անգոբը հեռացված մասերում թափանցիկ ջնարակը նստած է մուգ խեցու վրա և համապատասխան երանգ է ստացել։ Բեկորի վրա պահպանվել է անցք, վերջինս ջարդված բեկորները ամրացնելու համար էր։ Անգոբը հեռացնելու տեխնիկայով գեղազարդված օրինակներից հետաքրքրական է մեծ բրեղանի բեկորը (№ 1968/14)։ Քրեղանի վրա անգոբը հեռացնելով ապա վերջինս մուգ կանաչ գույնի ջնարակով ծածկելով ստացվել է ոճավորված գեղեցիկ բուսական զարդ։ Ինչպես նախորդ, այնպես էլ այս

---

[1] Կարկատուն անոթների վերաբերյալ վկայություն ենք գտնում նաև հայ մատենագրության մեջ. Գր. Մագիստրոսը գրում է. «Ոչ հասանիմ, ասէր, կարկատուն անօթիք առ հզօրագոյն թագաւորս մատնել և ոչ վտանգանամ երբէք ի սէր տրբոնիս». Գ ր. Մ ա գ ի ս տ ր ո ս ի թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 123։

օրինակի վրա անգոբը հեռացված տեղերում ջնարակը մուգ երանգ է ստացել։ Հետաքրքիր է ցածր օղակաձև հատակով պնակի բեկորը (№ 1968/32), որի ֆոնը նույնպես ծածկված է մուգ կանաչ գույնի ջնարակով։ Պնակի հատակի վրա փորագրելու և անգոբը հեռացնելու եղանակով զուգահեռ տարված, ապա այդ գծերը թեք հատող շառավիղներով արված շեղանկյունազարդեր, որոնց վերջավորվող մասերը անգոբը հեռացված լինելով, մուգ երանգ են ստացել։ Շեղանկյունների մեջ տեղ-տեղ արված են փոքր շրջանաձև զարդեր։ Նույն տեխնիկայով կանաչ գույնի ջնարակով արված նշաձև նախշերով է զարդարված № 1969/34 պնակի բեկորը։ Ուշագրավ է նաև № 1066/133 պնակի բեկորը (շրթնամասը)։ Անգոբը հեռացնելու եղանակով պնակի շրթի մոտ ստացվել է կատարման վարպետությամբ աչքի ընկնող գեղեցիկ պարանազարդ, որը ի տարբերություն այլ անոթների վրա հանդիպող նման զարդի ոչ թե գծագիր, այլ լայն, ժապավենաձև գեղեցիկ հյուսվածք է հիշեցնում։ Հյուսվածքազարդի եզրագծերի վրա ջնարակը հաստ շերտով նստելով գեղեցիկ սև երանգ է հաղորդել վերջինիս։ Պնակի ֆոնը ամբողջովին ծածկված է մուգ կանաչ ջնարակով։ Տառերի իմիտացիա հիշեցնող ոճավորված գեղեցիկ զարդով է գեղազարդված անգոբի հեռացման տեխնիկայով արված պնակի բեկորը (№ 1967/158)։ Անգոբը հեռացնելու տեխնիկայով զարդարված խեցեղենի նմուշների մեջ սակավաքանակ չեն դեղնա-սպիտակավուն ֆոն ունեցող օրինակները։ № 1969/86 քրեղանի ներսից, անգոբը հեռացնելու և փորագրելու տեխնիկայի զուգակցությամբ արված են նրբին, ոճավորված բուսական գեղեցիկ զարդանախշեր։ Անգոբը հեռացված տեղերում ջնարակը նստել է ուղղակի խեցու վրա և վերջինիս գեղեցիկ շագանակագույն երանգ է հաղորդել։ Պնակի դեղնա-սպիտակավուն ֆոնի վրա տեղ-տեղ կանաչ ջնարակով ցայտքեր են արված։ Նույն եղանակով և բուսական ոճավորված զարդերով են գեղազարդված № 1964/352 և № 1964/355 պնակների բեկորները։

Գառնիի X—XIII դարերի ջնարակված խեցեղենի հավաքածուներում համեմատաբար մեծ քանակ են կազմում դարձյալ Դվինի խեցեղենի տիպի փորագիր զարդերով օրինակները. Գառնիի վաղ փորագիր օրինակներից (№ 1964/354) դեղնա-շագանակագույն ֆոն ունեցող պնակի վրա (№ 1964/354) շրթին մոտ, վերջինիս զուգահեռ տարված է պնակը ներսից շուրջանակի բոլորող երկգիծ զարդ, որը շագանակագույն երանգ ունի։ Միագույն ջնարակի ֆոն ունեցող նմուշներից (№ 1964/330) ցածր օղակաձև հատակով պնակի բեկորի վրա փորագրելու տեխնիկայով հատակի վրա արված են իրար հատող շառավիղներ։ Պնակի մակերեսը պատած է կանաչ գույնի ջնարակով։

Ուշագրավ է մասնավորապես մի պնակի բեկորը (№ 1964/349), որի վրա փորագիր զարդին զուգակցում է վերագիր զարդը։ Պնակը ջնարակով է պատած նաև դրսից (մինչև հատակը)։ Պնակի շրթին մոտ վերևից և ներքևից երկգծերով եզերվող, պնակը դրսից շուրջանակի բոլորող զարդաժապավենի մեջ վերադրման եղանակով ամրացվել է ասես խաչի զարդ. զարդի չորս հատվածներից յուրաքանչյուրում արված է մեկական գնդիկ։ Զարդը հիշեցնում է վարդյակի ոճավորված մոտիվը։ Գծազարդ օրինակներից ուշագրավ է բարձր օղակաձև հատակով ջնարակած պնակի բեկորը (№ 1968/32)։ Վերջինիս վրա արված են երկշրջան և ապա գծագիր վարդյակի գեղեցիկ մոտիվը, ընդ որում գծազարդ տեղերում ջնարակը նստած է ուղղակի խեցու վրա և սև երանգ է ստացել։ Քառակուսիներ հիշեցնող զարդեր է կրում բարձր օղակաձև հատակով պնակի (№ 1964/329) բեկորը։ Հատակի վրա պատկերված քառակուսիների մեջ ար-




Տախտակ IV. Ջնարակած պնակների բեկորներ, XIII—XIV դարեր։

ված են հատիկաձև շարքեր։ Պնակի վրա պահպանվել են եռոտանու ոտքերի հետքերը։

Բուսական գեղեցիկ ոճավորված զարդեր ունեցող պնակներից ուշագրավ է № 1969/30 պնակի շրթնամասը։ Վերջինս դրսից ամբողջովին ծածկված է կանաչ գույնի ջնարակով։ Պնակի շրթի վերևի հարթ մասի վրա փորագրումով, իրարից 1 սմ հեռավորության վրա տարված են զուգահեռ գծեր, որոնց մեջ իրար հաջորդող սպիրալներ։ Պնակի շրթից ներքև արված են 3 սմ լայնությամբ փորագիր զարդագոտի, ապա դրա մեջ ոճավորված բուսական զարդեր, որպիսին հանդիպում ենք Դվինի ջնարակած օրինակների վրա։ Գառնիի միջնադարյան խեցեղենի հավաքածուներում հանդիպում են նաև փորագիր պնակների բեկորներ, որոնց վրա արված փորագիր նախշը ոչ թե զարդի եզրագծերը պատել, այլ ուղղակի պատկերներն ուղղահայաց և հորիզոնական գծերի հատումով, մանր ռոմբաձև գորգեր հիշեցնող մոտիվներով պնակը նախշելու եղանակով է արված, այդ մոտիվների ֆոնը գերազանցապես ծածկված է դեղնավուն ջնարակով։ Այս տիպի օրինակներից № 1965/176 պնակի բեկորի վրա միջնամեջ արված են ամբողջովին շեղանկյունաձև փորագիր զարդով, եզրագծերը շագանակագույն, պատկերների մակերեսը կանաչ ջնարակով արված բուսական զարդեր։ Պնակի վրա փորագիր տեղերը, ուր ջնարակը ուղղակի խեցու վրա է նստած, շագանակագույն է։ Դրանից նույն բուսական ոճավորված զարդերն են պատկերված մեծ բրեղանի (№ 1964/352) բեկորի վրա։ Նկարագրվածներին հիշեցնող օրինակներ Դվինի խեցեղենի հավաքածուներում դրանք չենք հանդիպում։ Ի դեպ նկատենք, որ Դվինի հավաքածուներում փորագիր օրինակները գերակշռում են։ Փորագրելու տեխնիկայով զարդարված նմուշներից ուշագրության արժանի է ջնարակած պնակի № 1967/155 բեկորը։ Պնակը դեղնա-սպիտակավուն ֆոնի վրա, շրթին մոտ շուրջանակի ձգվում է լայն զարդամասպավեն, որի եզրերը և ... մակերեսն ամբողջովին զարդարված է փորագրելու տեխնիկայով։ Զարդամասպավենի վրա ուղղահայաց և հորիզոնական տարված գծերի հատումով ստացվել է մանր շեղանկյունաձև զարդաշար։ Պնակը դրսից պատած է բաց կանաչավուն ջնարակով։ Վերջինիս շրթին պահպանվել է այլ անոթից թրծման ժամանակ ընկած խեցու և ջնարակի մասը։ № 1960/14 պնակի բեկորի վրա փորագրելու և անգոբը հեռացնելու տեխնիկայի զուգակցությամբ արվել են երկրաչափական և բուսական զարդամոտիվներ։ Պնակի կանաչավուն ֆոնի վրա հատակին արված է վերջինիս շուրջանակի բոլորող գեղեցիկ հյուսվածքազարդ։ Այն եզերված է գծերով։ Պնակի վրա գծագիր մասերում ջնարակը նստած է ուղղակի խեցու վրա. այդ պատճառով շագանակագույն երանգ է ստացել։ Հյուսվածքազարդ ենք գտնում նաև № 1968/14 ջնարակած պնակի բեկորի վրա, որն ի տարբերություն վերը նկարագրվածի, ոչ թե ռելիեֆ է, այլ միայն փորագիր։

Գառնիի միջնադարյան շերտերի պեղումներով երևան բերված խեցեղենի քննությունը ցույց է տալիս, որ Գառնին ունեցել է ինչպես անգոբի հեռացման, այնպես էլ փորագրելու տեխնիկայով զարդարված տեղական նմուշներ փորագիր օրինակների գերակշռությամբ։

Գառնիի խեցեղենի հավաքածուներում մեծ քանակ է կազմում ջնարակապատ խեցեղենի այն խումբը, որը գերազանցապես զարդարված է վերջնարկման տեխնիկայով։ Այս խմբին բնորոշ է կապույտ, սև, մուգ կանաչ և այլ գույնի ջնարակներով պնակների, խեցանոթների զարդարումը. այս խմբի մեջ մտնող նմուշների մի զգալի մասի հատակի վրա կան վարպետի նշաններ,

ընդ որում վարպետի նշաններից մի քանիսը կրկնվում են. Հանդիպում են նաև խոտանի բեկորներ, ինչպես և ջնարակած պնակների միջև թրծելիս գրվող խոտանիները, որոնք վարպետի նշանով նմուշների հետ միասին ոչ մի կասկած չեն թողնում, որ խեցեղենի այս խումբը տեղական, Գառնիի արտադրանք է։ Առընթեր նյութից, զարգամոտիվների և զարդարման տեխնիկայից ելնելով խեցեղենի այս խումբը թվագրվում է XIV—XV դարերով։ Բերենք փորագիր զարդերով այս խմբի ամենաբնորոշ մի քանի նմուշների նկարագիրը։ № 1964/264, ջնարակած պնակի բեկոր. խեցու հաստությունը հատակի մոտ 1,2 սմ փորագրումով պնակի անգոբի վրա պատկերված են ոճավորված բուսական զարդեր։ Պնակը ծածկված է փիրուզագույն ջնարակով։ Նույն տեխնիկայով են զարդարված նույն ժամանակով թվագրվող № 1964/334, 1964/340 և այլ օրինակներ, որոնց վրա [illegible]ին վերարտադրված են ոճավորված զանազան բուսական զարդամոտիվներ։ № 1965/167 պնակի վրա փորագրումով արված պսակաթերթը պատկերող զարդերի վրա տարբեր գույնի ջնարակով արված են ցայտքեր։ Նույն տեխնիկայով է զարդարված № 1967/129 պնակի բեկորը, որի վրա արված են բըլթաններ մուգ շագանակագույն և փիրուզագույն ջնարակով։

Գառնիի պեղումների, մասնավորապես ամրոցի մուտքի մոտ, երեք աշտարակների հետևում պեղված տեղամասում, ինչպես նաև խճանկար հատակով բաղնիքի և պալատական կառույցների խմբի պեղումների ժամանակ վերին շերտերից հայտնաբերված խեցեղենը առընթեր նյութից դատելով վերաբերում է XIV—XV դարերին և հանդիսանում է տեղական, Գառնիի արտադրանք։ Վերջինս բազմագույն է. այն բնութագրվում է բավականին խճճված զարդանկարներով։ Այս խմբին առավել բնորոշ է բուսական խիստ ոճավորված զարդանախշը։ Ընդ որում զարդանկարները միշտ չէ, որ կրում են հայկական զարդարվեստին բնորոշ ձևերի կնիքը, վերջիններիս վրա զգալի տեղ է գրավում, թերևս պարսկականը, որը թեև ընդօրինակություն չէ, այնուամենայնիվ զգացվում է վերջինիս ազդեցությունը։ Այդ դարերում խեցեղենի այս խմբի վրա հայկական զարդամոտիվների գերակշռության խախտվելը բացատրվում է երկրի քաղաքական անհաստատ վիճակով պայմանավորվող օտար բնակչության առկայությամբ, ինչպես նաև բնակչության, մասնավորապես վերնախավի այդ ժամանակների ճաշակով։ Խեցեղենը, որպես զանգվածային արտադրության բնագավառ, բնական է, որ կրելու էր ժամանակի ազդեցությունը։ Գառնիի XIV—XV դարերի խեցեղենի վրա հանդիպող զարդերն իրենց ոճավորությամբ առավել հիշեցնում են գորգային զարդերը, որոնց ինչպես հայտնի է բնորոշ է զարդերի առավել ոճավորումը։

Գառնիի XIV—XV դարերին թվագրվող խեցեղենի հավաքածուներում մեծ քանակ են կազմում վերջնարակման եղանակով զարդարված խեցանոթների նմուշները։ № 1967/154 պնակի երկնագույն ֆոնի վրա սև գույնի ջնարակով, ներսից, հատակից դեպի շրթերն են տարված պսակաթերթեր հիշեցնող լայն ճառագայթներ (շառավիղներ)։ Պնակի հատակի վրա ներսից նշմարվում են խոտանու ոտքերի տեղերը։ Վերջնարակման տեխնիկայով զարդարված նմուշներից ուշագրավ է վարպետի նշան ունեցող բարձր օղակաձև հատակով պնակի (№ 1965/167) բեկորը։ Պնակի ներսից, հատակին փիրուզագույն ֆոնի վրա սև գույնի ջնարակով արված է վարդյակը պատկերող զարդ։ Վերջինիս պսակաթերթի եզրագծերն արված են սև գույնի ջնարակով։ Պնակի հատակի վրա վարդյակի զարդամոտիվի շուրջն արված են դարձյալ բուսական, սակայն ոճավորված

զարդեր։ Պնակի հատակի վրա պահպանվել են եռոտանու ոտքերի տեղերը։ Վերջնարակման տեխնիկայով գեղազարդված խեցանոթներից ուշագրավ է նաև ջնարակած պնակի (№ 1967/165) բեկորը. պնակի երկնագույն ֆոնի վրա սև գույնի ջնարակով արված է բուսական զարդ։ Պնակի վրա, հիմնական, բուսական զարդամոտիվի ռեզերվներում դարձյալ սև գույնի ջնարակով արված են շտրիխներ, որոնք ասես նրբերանգել են պնակի վրա պատկերված զարդաձևերը։ Գրեթե նույն զարդն ենք գտնում № 1963/32 պնակի բեկորի վրա։ Փիրուզագույն ֆոնի վրա, սև գույնի ջնարակով՝ ուղղահայաց և հորիզոնական տարված բարակ գծերի հատումով արված մանր քառակուսիներ հիշեցնող մոտիվով է գեղազարդված ջնարակած պնակի (№ 1967/136) բեկորը (հատակը), ընդ որում պնակի հատակի վրա վերջնարակումով արված շրջանը քառակուսիների է բաժանված միմյանցից տարված ավելի հաստ և բարակ գծերով։ Գրեթե նույն զարդն ունեն № 1965/169 և № 1968/39 պնակի բեկորները։ Երկրաչափական զարդ ունեցող խեցանոթների նմուշներից ուշագրավ է ցածր օղակաձև հատակով պնակի (№ 1961/260) բեկորը (հատակը). վերջնարակման տեխնիկայով պնակի երկնագույն ֆոնի վրա սև գույնի ջնարակով հաստ գծով արված են շրջաններ, կենտրոնական շրջանի մեջ հորիզոնական և ուղղահայաց տարված գծերով կազմված քառակուսիներ հիշեցնող զարդ։ Շրջանների միջև, պնակի երկնագույն ֆոնը ամբողջովին կրակլեներ են, որոնք ասես զարդ լինեն։ Նկարազարդված պնակի տիպի այլ նմուշներով բավականին առատ է Դվինի խեցեղենը։ XIV—XV դարերի Դվինի խեցեղենի հավաքածուներում բավականին մեծ թիվ են կազմում սպիտակ ֆոնի վրա կանաչ, կապույտ, փիրուզագույն և սև գույնի ջնարակներով պատած, բուսական և երկրաչափական զարդեր ունեցող խեցանոթների նմուշները։ № 1968/82 պնակի բեկորի վրա կանաչ, կապույտ, փիրուզագույն ջնարակով արված են ոճավորված երկրաչափական և բուսական զարդեր։ Բեկորը փոքր է, վերջինիս վրա նշմարվում են շրջան հիշեցնող զարդը, որի մեջ կանաչ գույնի ջնարակով տարված են գծեր. դրանք պատում են շրջանագծի ամբողջ մակերեսը։ Երկու հաստ գծերով արված կենտրոնական շրջանն զարդից վերև կան ոճավորված բուսական զարդեր։ Պնակը դրսից ես պատած է եղել ջնարակով։ Մի այլ կանաչ գույնի ջնարակով արված երկու հաստ գծերով պնակի (№ 1964/331) հատակի վրա պատկերված է շրջան, ապա շրջանի փիրուզագույն ֆոնի վրա հորիզոնական և ուղղահայաց տարված գծերով արված է մանր քառակուսիներ հիշեցնող զարդ, վերջինս կրկնում է № 1967/136 օրինակի զարդը։ Բուսական զարդեր կրող ջնարակած խեցանոթներից № 1965/167 պնակի բեկորի, շրթին մոտ սպիտակ ֆոնի վրա, փիրուզագույն, ապա սև և կանաչ գույնի ջնարակով տարված են հաստ գծեր, որոնք զարդանախշի եզրաշրջող գծեր են, ապա երկու կողմից պատած այս եռագույն (կանաչ, փիրուզագույն, կրկին կանաչ) եզրագծերի մեջ կանաչ գույնի ջնարակով սպիտակ ֆոնի վրա պատկերված է ինչ որ ծաղիկ։ Ծաղկի ցողունը, վերջինիս պսակաթերթերը տարված են կանաչ գույնի ջնարակով, ծաղկի վերջավորվող մասը փիրուզագույն ջնարակով։ Այս հիմնական զարդամոտիվի շուրջը արված են կրկին բուսական, ընդ որում խիստ ոճավորված, խճողված զարդեր։ Պնակի դրսից, դարձյալ սպիտակ ֆոնի վրա կանաչ գույնի ջնարակով տարված են իրար զուգահեռ հաստ շառավիղներ և էլիպսներ։ Պսակաթերթի զարդ ունեցող նմուշներից № 1965/167 պնակի շրթնամասի վրա ներսից սև գույնի ջնարակով պատկերված է պսակաթերթ, ընդ որում նրա կենտրոնում տարված է փիրուզագույն ջնարակով հաստ շառավիղ, որից երկու կողմ տարածվում են սև գույնի ջնարակով արված

արմատի շյուղերը հիշեցնող ճյուղեր։ Պատկերված պսակաթերթն ի տարբերություն Գառնիի և Դվինի խեցեղենի ավելի վաղ ժամանակով թվագրվող նմուշների. վերևի մասում եռանկյունաձև թեք հատումով է շրջափակված. պսակաթերթի եզրագծերն արված են սև գույնի ջնարակով (երկգծով)։ Պնակը ջնարակով է պատած նաև դրսից. սպիտակ ֆոնի վրա շրթից ներքև իջեցված են շեղ արված շառավիղներ (աղեղնաձև զարդեր)։ Կանաչ և փիրուզագույն ջնարակով պատած պնակի վրա (№ 1965/248) արված են ոճավորված երկրաչափական զարդեր։ Ի դեպ, նկատենք, որ նկարագրված բոլոր նմուշների ռեզերվներում արված են զանազան խճճված զարդեր. խախտված է ավելի վաղ նմուշներին հատուկ կենտրոնական զարդի և նրան հարող զարդերի համաչափությունը և ընդգծված է XIV—XV դարերի խեցեղենի նմուշների զարդերին բնորոշ խճճվածությունը։

Գառնիի XIV—XV դարերի խեցեղենի հավաքածուներում հանդիպում են նմուշներ, որոնք ունեն կապտա-սպիտակավուն ֆոն և այդ ֆոնի վրա մանգանի գույնի ջնարակով արված զարդեր. Նույր խեցիով պնակի (№ 1968/32) բեկորի վրա մանգանի մուգ ցայտուն գույնի ջնարակով արված է բուսական ոճավորված զարդ։ Նույն գույնի ջնարակով է ծածկված № 1967/153 պնակի բեկորի վրա պատկերված բուսական զարդի՝ պսակաթերթի մակերեսը։ Պնակի ֆոնը սպիտակ է, պսակաթերթի եզրագծերն արված են փիրուզագույն ջնարակով, ընդ որում պսակաթերթը վերջավորվում է եռանկյունաձև թեք հատումով. պսակաթերթի վրա նուրբ մանգանի գույնի ջնարակով արված են մանր ըլթակներ։ Գառնիի վերջնարակման եղանակով զարդարված նման օրինակները բավականին շատ են։ XIV—XV դարերով թվագրվող Գառնիի խեցեղենի նկարագրված նմուշներն են հիշեցնում Հայաստանի Պետական պատմական թանգարանի ֆոնդերում պահվող շինարարական աշխատանքների ժամանակ Երևանում և այլուր հայտնաբերված զգալի թվով նմուշներ, որոնց վրա ևս գերակշռում է ջնարակման եղանակով՝ կանաչ, փիրուզագույն ջնարակով արված զարդերը։ Այսպիսով, Գառնիի XIV—XV դարերի խեցեղենը հնարավորություն է ընձեռում թվագրելու նաև Երևանի այդ ժամանակաշրջանի ջնարակապատ խեցեղենը։ XIV—XV դարերի Գառնիի խեցեղենին բնորոշ է զարդերի խճճվածությունը, ֆոնի սպիտակ լինելը։ Խեցեղենի նմուշների վրա գերազանցապես պատկերված են բուսական մոտիվներ։ Ջնարակներից գերազանցապես գործադրվել են սև, կանաչ, փիրուզագույն, ինչպես նաև մանգանի գույն ունեցող մետաղյա օքսիդներ։ Որպես տեխնոլոգիական փոփոխություն նկատելի է, փորագրելու տեխնիկայի սակավ գործածումը, դրեթե բացակայում է անդորր հեռացնելու տեխնիկայով գեղազարդումը։ XIV—XV դարերի Գառնիի, ինչպես նաև Երևանի խեցեղենի գեղազարդման մեջ գերակշռում է վերջնարակման տեխնիկան և պնակները դրսից անպայմանորեն ջնարակով պատելը։ Հայտնաբերված նմուշները հիմք են տալիս եզրակացնելու, որ եթե IX—XIII դարերի ջնարակած նմուշների մեջ հանդիպում են առավել մեծ չափի խեցանոթներ, թասերի պնակների բեկորներ, ապա XIV—XV դարերի Գառնիի խեցեղեն նմուշները գերազանցապես ուղղահայաց բարձրացող և շրթերը փոքր ինչ ներճկված, ոչ մեծ տարողության անոթներ են, առավելապես պնակներ, որոնք ունեն սովորաբար սպիտակ ֆոն և գունավորված են սև, փիրուզագույն և կանաչ գույնի ջնարակներով։ Ի վերջո Գառնիի XIV—XV դարերի խեցեղենի նմուշների մեծ մասը կրում են վարպետի նշաններ, ընդ որում որոշ նշաններ կրկնվում են. այս հանգամանքը խոսում օրինակների առկայու-




Տախտակ V. Ջնարակած անոթների բեկորներ, XV դար։

թյուն հետ ոչ մի կասկած չեն թողնում XIV—XV դարերում Գառնիում սեփական խեցեղենի արտադրության գոյության մասին։ Գառնիի ջնարակած խեցանոթների վրա արված վարպետի նշաններ հանդիպում ենք ոչ միայն XIV—XV դարերի օրինակների, այլ նաև IX—XIII դարերով թվագրվող փորագրելու տեխնիկայով գեղազարդված ջնարակով պատած առանձին նմուշների վրա՝ վերջիններիս հատակին։ Վարպետի նշանները արվել են խեցանոթի հատակին դրոշմիչի օգնությամբ, խեցանոթը դուրգի վրա պատրաստելիս հատակի վրա դրոշմակնիք դնելու եղանակով։ Հանդիպում են նաև խեցու թաց վիճակում ձողի օգնությամբ փորագրված վարպետի նշաններ, սակայն այդպիսիները խիստ սակավ են և ջնարակած խեցեղենի վրա չեն հանդիպում։

Միջնադարյան Հայաստանի քաղաքների, գյուղաքաղաքների, բերդ դղյակների պեղումների ժամանակ հայտնաբերված ջնարակած խեցեղենի հավաքածուներում վարպետի նշան կրող նմուշներն անհամեմատ շատ են Գառնիի խեցեղենի հավաքածուներում. մինչև 1959 թ. պեղումներն արդեն հայտնի են շուրջ 50 օրինակներ, որոնց հատակի վրա դրսից դրոշմիչով արված են վարպետի նշաններ, վերջիններս իրենցից ներկայացնում են հնգաթև և վեցթևանի աստղեր (№ 1969/57, 1967/30) նմանվող շրջանի մեջ առված զուգահեռներով կազմվող (№ 1968/32), ինչպես նաև շրջանի մեջ մանր ըլթակներ հիշեցնող զարդի ձևով (№ 1967/133) վարպետի նշաններ։ Վարպետի նշանների մեծ մասը ոլորուն, պարանաձև, զարդակի ոճավորված բուսական զարդեր հիշեցնող ռելիեֆ նշաններ են (նկ. 36)։ Բուսական ռելիեֆ, բարդ բուսական զարդանախշ հիշեցնող դրոշմվածը են ներկայացնում № 1965/176ա, № 1964/262, № 1964 322—950 բեկորների վրայի վարպետի նշանները (նկ. 37)։

Գառնիի խեցեղենի նմուշների վրա արված վարպետի նշանները սակավ են կրկնվում։ Վարպետի նշանները առավելապես հանդիպում են վերջնարականների միագույն գեղազարդված ամանների, ափսեների նմուշների վրա։ Գառնիի XIV—XV դարերի ջնարակած խեցեղենի վրա առատորեն հանդիպող վարպետի նշանները մի ավելորդ անգամ հաստատում են Դվինի անկումից հետո Գառնիում խեցեղենի սեփական արտադրության գոյությունը։ Բավականաչափ առատորեն հանդիպող այդ խեցեղենի ուսումնասիրությունը կարևոր է, այդ ժամանակաշրջանի խեցեղենը բնութագրելու և նրա առանձնահատկությունները պարզելու տեսակետից։

Հախճապակի։ Գառնիում ջնարակապատ խեցեղենի համեմատությամբ հախճապակին սակավ գործածական է եղել։ Գառնիում պեղումներից հախճապակու բեկորներ գտնվել են։ Հանդիպում են միագույն փիրուզագույն հարթ և ռելիեֆ, վերադիր զարդերով խեցանոթների բեկորներ։ Միագույն նմուշներից ուշագրավ է № 1967/149 պնակի հատակը։ Հախճապակե պնակը ցածր հատակով է, ներսից մակերեսը պատած է փիրուզագույն ջնարակով։ Պնակի վրա ջնարակի զանգվածը նստած է բավական հաստ ապակենման շերտով, որի տակ նշմարվում են ինչ որ զարդեր։ Պնակի ներսից, հատակի վրա պահպանվել են եռոտանու ծայրերի հետքերը։ Տվյալ դեպքում այդ հանգամանքը խոսում է ոչ այնքան Գառնիում հախճապակու արտադրության, որքան նրա թանկ լինելու, անգամ խոտանը արտահանելու փաստի մասին։ Միագույն կաթնաարծաթա-

---

1 Նույնանման տեսքի ձև ունեցող նշանով կղմինդրներ են հայտնի Խերսոնեսում։ Տես А. Л. Якобсон, Средневековый Херсонес, МИА, № 17.

վուն ջնարակով է պատած նրրախեցի օղակաձև հատակով հախճապակե պնակի (№ 1961/91) մակերեսը դրսից և ներսից։ Պնակի մակերեսին նշմարվում են կրակլեններ՝ ճաքեր, որոնք արդյունք են թրծման ժամանակ պնակի երկար պահվելու և ջնարակի որակի։ Ներսից միագույն, այն է արծաթագույն ջնարակով և



6 սմ

Նկ. 36. Ջնարակած կավե պնակներ և թասերի հատակներ, վարպետների նշաններով։

պատած հախճապակե ափսեի (№ 1967/3) բեկորը (հատակը)։ Պնակը դրսից պատած է մուգ կապույտ գույնի ջնարակով։ Բերված օրինակները թվագրվում են XII դարով և ամենայն հավանականությամբ ծագում են Դվինից։

Առանձին խումբ են կազմում և պատրաստման ու զարդարման եղանակներով ուղղակի կերպով Դվինի և Անիի միջնաբերդի պեղումներով հայտնաբերված



















Նկ. 37. Ջնարակած կավե պնակների և թասերի հատակներ, վարպետների նշաններով։

հախճապակու նմուշներն են հիշեցնում Գառնիի պեղումներով երևան բերված ռելեֆ, ինչպես նաև վերադիր զարդեր ունեցող օրինակները։ Մի պնակի բեկոր (№ 1964/240.) չ. 4×3 սմ ներսից պատած է բաց փիրուզագույն ջնարակով, դրսից սպիտակավուն ֆոնի վրա տարված են եղևնազարդ հիշեցնող գծեր։ Փիրուզագույն ջնարակով են պատած դրսից ռելեֆ զարդեր ունեցող № 1964/330, № 1964/250 տիպերի բեկորները։ Առաջինի վրա դրսից նշանձև վերադիր զարդագոտու վերևից և ներքևից արված են շեղ. լայն գծեր։ Ռելեֆ զարդ ունեցող միագույն ջնարակով պատած հախճապակյա պնակի նմուշներից ուշագրավ է № 1967/110 պնակի բեկորը. վերջինիս վրա դրսից ռելեֆ զարդը պատկերում է ինչ որ ոճավորված բուսական մոտիվ։ Դվինի վերադիր զարդով հախճապակե անոթի (№ 1794/121)[1] վարդյակի զարդն է հիշեցնում Գառնիի հախճապակե պնակի (№ 1967/153) բեկորի վրա վարպետորեն վերարտադրված վարդյակի վերադիր ռելեֆ մոտիվը։ Ինչպես նախորդ, այնպես էլ այս նմուշը ատրնթեր նյութից ելնելով թվագրվում է XII—XIII դարերով և բերված է Դվին քաղաքից։

Գառնիում գտնվել են նաև իրանական շողուն հախճապակու մի քանի բեկորներ։ Իրանական հախճապակու ֆրագմենտար օրինակներից № 1965/154, (չ. 8×6 սմ) խեցանոթի սպիտակ ֆոնի վրա պղնձագույն ջնարակով արված են ոճավորված բուսական զարդեր։

Միջնադարյան Հայաստանի Դվին և Անի քաղաքատեղիների պեղումների ժամանակ հայտնաբերված սելադոն անունով հայտնի բարձրորակ խեցեղենի նմուշներ գտնվել են նաև Գառնիում։ Սելադոն անունով հայտնի չինական ծագում ունեցող խեցանոթների խեցին մանրահատիկ է, սպիտակ գույնի, կարծր, ծանր է և օժտված հնչունայնությամբ։ Սելադոն անունով խեցանոթները պատած են բաց կանաչ գույնի ջնարակով. ընդ որում ի տարբերություն ճենապակյա այլ անոթների վերջինիս ջնարակը շատ ողորկ է նստած և շատ ավելի գունավոր ապակու տպավորություն է թողնում։ Բերենք Գառնիում պեղումների ժամանակ հայտնաբերված նմուշներից ամենաբնորոշների նկարագիրը։ № 1965/186 պնակի բեկոր. վերջինս պնակի շրթնամասն է, խեցու հաստությունը 0,8 սմ է, պնակի բաց կանաչավուն ջնարակի տակ թույլ կերպով նշմարվում են դրգի պտույտից առաջացած շրջանաձև գծերը, որոնք ասես պնակը կարդարելու համար են արվել։ Ետ փռվող լայն շրթով մեծ չափի պնակի բեկորներից № 1967/105 վրա արված է ռելեֆ բուսական զարդ, որը թեև վերադիր չէ, սակայն նրբին կատարումով վերադիր ռելեֆ զարդի տպավորություն է թողնում։ Խեցու հաստությունը 0,8 սմ է։ Համեմատաբար հաստ խեցի ունի № 1964/244 պնակի բեկորը, որի խեցու հաստությունը ղանգվածային մասում 1,3 սմ է, իսկ բարակ անդում՝ 0,6 սմ։ Պնակի վրա ռելեֆ զարդի տպավորություն թողնող տերևազարդ, ձևավոր, ետ փռվող շրթով պնակի բեկորներից ուշագրավ է № 1964/231 մեծ պնակի շուրթը։ Գառնիի պեղումների միջոցին երևան բերված չինական բարձրորակ խեցեղենի՝ սելադոնի նմուշներից բացի հայտնաբերվել են նաև բաց կանաչավուն ջնարակով պատած սպիտակախեցի պնակների բեկորներ. որոշ ուսումնասիրողներ հակված են վերջիններս անվանելու տեղական սելադոնի նմուշներ, կարծիք, որը շատ հեռու է իրականությունից։ Հայտնաբերված նմուշները չունեն չինական սելադոնին բնորոշ կարծ-

[1] Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 224։

րությամբ, խեցու ծանրություն, վերջիններս ավելի շուտ հախճապակյա նմուշներ են, որոնք առայժմ սակավ հայտնի են, քիչ են հանդիպում միջնադարյան Հայաստանի խեցեղենի համալիրներում:

Գառնիի պեղումներից հայտնաբերված չինական խեցեղենի՝ սելադոնի նմուշները երևան են եկել XII—XIII դարերով թվագրվող հնագիտական նյութի, մասնավորապես ջնարակած խեցեղենի հետ: Վերջինիս բեկորները հար և նման են Անիի պեղումների ժամանակ երևան բերված օրինակներին, որոնք թվագրվում են XII—XIII դարերով: Չինական սելադոնի XII—XIII դարերով թվագրվող խեցեղենի նմուշների գյուտը մեր կարծիքով շատ ավելի խոսում է վերջիններիս որպես զարդասպասքի օգտագործման մասին, ընդ որում նրանք կարող էին օգտագործվել նաև ավելի ուշ ժամանակներում:

Շքաղյուսներ: Միջնադարյան Հայաստանի արհեստային արտադրության և առևտրի խոշոր կենտրոնների՝ Անիի և Դվինի պեղումների ժամանակ հայտնաբերվել է նաև նշանակալից քանակությամբ յուրահատուկ խեցեղեն, որը հնագիտական գրականության մեջ հայտնի է շքաղյուս անունով: Շքաղյուսները սպիտակ խեցիով, կաղապարի մեջ պատրաստված միայն արտաքին մակերեսին ջնարակ ունեցող շինարարական խեցեղենն է: Մինչև այժմ Հայաստանում հայտնաբերված շքաղյուսները, ստորաբաժանվում են երեք հիմնական խմբերի. 1. տեղական միագույն շքաղյուսներ, 2. տեղական զարդարուն շքաղյուսներ և 3. ներմուծված իրանական շքաղյուսներ: Անիի և Դվինի պեղումներով հայտնաբերված շքաղյուսների տեղական բավական քանակ կազմող նմուշները հիմք են տալիս ենթադրելու, որ այդ քաղաքներն ունեցել են շքաղյուսի սեփական արտադրություն: Շքաղյուսի համար օգտագործվում էր հիմնականում սպիտակ կավ, որը թրծելուց հետո անհրաժեշտ կարծրություն էր ձեռք բերում և օգտագործվում շինարարական կարիքների համար: Կավը քարերից և այլ առարկաներից մաքրելուց հետո «հունցվում» էր, ապա դրվում ձևավոր կաղապարների մեջ, մինչև չորանալը, ապա չորացած աղյուսը, եթե այն միագույն զարդ էր ունենում, մի երեսով ընկղմում էին ջնարակով լցված ամանի մեջ, հանում այդ ամանից, փոքր ինչ չորացնում և ապա թրծում շքաղյուսների համար հատուկ թրծման հնոցարաններում:

Անիի, Դվինի և Գառնիի պեղումներով հայտնաբերվել են նշանակալից քանակությամբ միագույն զանազան ձևի շքաղյուսներ, որոնց ավելի ճիշտ կլինի անվանել ջնարակապատ նուրբ սալիկ, քան շքաղյուս: Ավելի մեծ քանակ են կազմում, Անիի, Դվինի, Գառնիի պեղումների ժամանակ հայտնաբերված շքեղ զարդարված բազմաթիվ շքաղյուսները, որոնք ինչպես արդեն պարզված է, մեծ մասամբ ներմուծվել են իրանական քաղաքներից: Հայտնի է, որ Հայաստանը քարի ճարտարապետության, քանդակագործության բարձր արվեստի հայրենիքներից մեկը լինելով շքաղյուսի կարիքը քիչ ուներ: Շքաղյուսը շինարարության մեջ թափանցել է, գերազանցապես վերնախավի ինչ որ չափով օտարի ճաշակին ձայնակցելու միտումով: Հայաստանում օտար խավի գոյությամբ է, որ երևան են գալիս [illegible] աղյուսները, որոնք մեծ քանակությամբ հայտնաբերվել են Դվինի պեղումների ժամանակ[1]: Անիի, Դվինի և Գառնիի պեղումների միջոցին երևան բերված շքաղյուսների գույները ցույց են տալիս, որ երբեմնի խիստ աննշան չափերով գործածվող շքաղյուսը XII դարի վերջից սկսում է որոշ տեղ սրա-

[1] Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Երևան, 1952 թ.:

